

# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՃԱՆԱՊԱՐՀԻ ԿԵՍԻՆ

(Հատված պոեմից)

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

...Դու պիտի հիշես ապրելու համար...
Դու պիտի առնե՛ս վրեժ անհու՛ն.
Պիտի խաղաղե՛ս հոգին քո խռով.
Բայց ո՛չ արյան դեմ կոչելով արյուն
Եվ մահի դիմաց մահ սերմանելով.—
Ո՛չ. ի՜մ լուսավոր. դու. որ այն պահի՛ն
Երբ ընկած էիր ամարդ հարվածից.
Երբ թվում էր թե աչքերդ մթին
Էլ չե՜ն պարզվելու թույնից ու մաղձից.—
Քո մեջ ուժ գտար պայծառ նայելու
Մարդկա՛նց. ազգերի՛ն. զարթ՛նող աշխարհի՛ն
Եվ խոցված ձեռքով զինազրկելու
Եղբայրության նոր գաղափարների՛ն.—
Դու, որ մեծերից մահը քո հոգում՝
Դեռ սուգերի մեջ՝ Զարե՛նց ծնեցիր.
Ու ողջակիզվող սիրտդ նետեցիր
Կա՛րմիր Գալիքի հրի՜ն բոցբոքու՛ն.—
Որ այդ բոցերում զտվա՛ծ. նորոգվա՛ծ.
Նորի՛ց ժայթքեցիր Եղեգա՛ն փողից.—
Ո՞չ. ուրի՛շ է քո հատուցման ուղի՛ն.
Քեզ կյանքի ուրի՜շ ճամփա է տրված...
Դու պիտի վրեժ ա՛ռնես ապրելո՛վ.



Ապրելով համա՛ռ, հազարապատի՛կ,
Ավերումի դեմ՝ քո Երևանո՛վ,
Աքսորների դեմ՝ խուլ անապատից
Նորից տուն դարձող քո քարավանո՛վ.—
Դու պիտի ապրես այսպե՛ս, սրանո՛վ:
Ծենիքի հանդում մորթված որբի տեղ՝
Աշնակցի հարսի տասնըչորս որդով.
Մշո դաշտի մեջ սևցած խոփի տեղ՝
Քո տրակտորո՛վ, քո ծուխ-ծուխ արտո՛վ.
Մարութա սարի մարած բոցի տեղ՝
Յոթն աշխա՛րհ ծնող՝ քո յոթ կայանով.
Տաթևի կուրցա՛ծ դպրանոցի տեղ՝
Բյուր ակնո՛վ նայող քո Բյուրականով:
Հայոց արցունքաշ «Կռունկի՛» տեղակ,
Սարե-սար փռված սև-սուգի՛ տեղակ՝
Հախո՛ւռն, կենսահո՛րդ, սիրտը թո՛ւնդ
Հանճարիդ լույսը աշխարհի՛ն տանող
Քո սեգ Սարյանով,
Խաչատրյանով.—
Դու պիտի ապրես այսպե՛ս, սրանո՛վ:
Ախի, մռլուցքի, մշուշի դիմաց՝
Քո սիրող, փարող, երազող սրտո՛վ.
Դավի, արշավի, բիրտ ուժի դիմաց՝
Ազնիվ դաշինքի քո հի՛ն կարոտով.
Օտարականի պիտակի դիմաց՝
Օտարի դատի՛ն իր կյանքո՛վ կանգնած,
Ծիտա՛կ, շողշողո՛ւն քո Մանուշյանով.—
Դու պիտի ապրես այսպես, սրանո՛վ:
Պատմության երթում՝ անդուլ, հանապազ
Առաջինների շարքո՛ւմ քայլելով.
Պատմության հանդեպ՝ երեսդ միշտ պարզ՝
Քո ողջ էությամբ նորի՛ն փարվելով.—
Քո մաքառելով,
Քո հավատալով.—
Դու, ի՛մ ժողովուրդ, դու ապրե՛լ ես, կա՛ս,
Այսպե՛ս ապրելով...



ԿՈՄԻՏԱՍ



ԴԱՆԻԵԼ ՎԱՐՈՒԺԱՆ



ԳՐԻԳՈՐ ԶՈՀՐԱՊ



ՍԻԱՄԱՆԹՈ



ՌՈՒԲԵՆ ՍԵՎԱԿ

Հնչեց դասի զանգը, հնչեց սովորականից երկար, տխուր ու լալագին:

Բայց աշակերտները դեռ ոչինչ չգիտեին: Նրանք չէին իմացել, որ արնաներկ արշալույս էր բացվել Հայոց աշխարհին, արնաներկ ու մահահոտ: Չգիտեին, որ կեսգիշերից սկսած՝ հայրենիքի զովասուն օդը թանձրացել էր անմեղ մանուկների աղեկտուր հեծկլտանքով ու մայրերի ողբագին հառաչանքներով: Հապա մարդասպանների շառաչուն մտրա՛կը, որ իջնում էր նրանց մերկ սրունքներին, մեջքին, դեմքին...

Աշակերտները դեռ ոչինչ չգիտեին: Նրանք ուրախ կատակելով գրավեցին իրենց տեղերը և սպասում էին սիրելի ուսուցիչներին: Ուր որ է կբացվեր դասարաններից մեկի դուռը և ներս կմտներ հանճարեղ Կոմիտասը՝ թախծոտ ու խոհուն աչքերով, հայրական ժպիտը դեմքին: Մյուս դասարաններում նույնպես անհամբերությամբ սպասում էին, սպասում էին տաղանդավոր գրողներ Դանիել Վարուժանին, Սիամանթոյին, Ռուբեն Սևակին, Ռուբեն Զարդարյանին, որոնք նույնպես ուսուցիչ էին Պոլիսի Կենտրոնական վարժարանում: Անցնում էին րոպեները, իսկ նրանք չկային: Ի՞նչ էր պատահել, չէ՞ որ նրանք երբեք չէին ուշանում դասերից: Բոլորն էլ անհանգիստ էին:

Եվ ահա բացվեց դասարաններից մեկի դուռը և երևաց վարժարանի ամենածեր ուսուցիչ Ստեփան Կուրտիկյանի սգավոր դեմքը: Քար լռության մեջ, կոկորդում սեղմելով լացը, նա հայտնեց ծանր ու ահավոր լուրը. թուրքական կառավարությունը ձերբակալել է բոլոր ուսուցիչներին:

— Տղա՛յք,— գուժեց նա,— այս գիշեր տարել են հայոց սոխակ Կոմիտասին, չկան նաև մեր Վարուժանն ու Սիամանթոն, Սևակն ու Զարդարյանը, չկան ամբողջ Պոլսի գրողներն ու ուսուցիչները: Հարյուրավոր հայ մտավորականների են բանտարկել այս գիշեր: Որբացավ ոչ միայն մեր վարժարանը, որբացավ ու ու գլխատվեց ողջ պոլսահայ գաղութը...

Արցունքն աչքներում հազիվ զսպած՝ աշակերտները լսում էին ծեր ուսուցչին, իսկ նա շարունակում էր.

— Ցամաքեցրե՛ք ձեր աչքերը, և ո՛չ մի լացի ձայն. մեր վարժարանը «հայ օջախն է», զուցե ոստիկանները այստեղ էլ գան: Առանց ուսուցիչների այսօր վեց ժամ կմնաք դասարանում. տուն գնալը թուրքերը կհամարեն բողոքի ցույց:

Ապա նա անցավ մյուս դասարանները: Աշակերտները վշտից



# ՀԻՍՈՒՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ

քարացել էին: Նստարանները ողողում էին դառը արցունքով՝ բարձրաձայն լաց լինելու իրավունքից զրկված: Լուռ ու դառնակսկիծ ողբում էր ողջ վարժարանը, իսկ ծեր ուսուցիչը երամը կորցրած թռչունի նման կրկին ու կրկին անգամ մտնում էր դասարանները, որ մխիթարական խոսքեր ա-



սեր ու հանգստացներ աշակերտներին:

Արցունքի, լացի, հեկեկանքի ու հառաչանքի օր էր 1915 թվականի ապրիլի 24-ը: Դա հայկական եղեռնի սկիզբն էր...

* * *

Թուրքական կառավարությունը վաղուց էր ուզում բնաջնջել հայությանը և ամբողջովին տիրանալ Արևմտյան Հայաստանին ու Կիլիկիային, բայց դա նրան չէր հաջողվում, ամեն անգամ խիզախ հայորդիները զինված պաշտպանության էին դիմում: Արնախում փաշաները ստիպված էին լինում բավարարվել միայն «մանր» կոտորածներով: Այդպիսի «մանր» կոտորածները միայն 1895—96 թ.թ. խլեցին ավելի քան երեք հարյուր հազար հայի կյանք: Եվ ահա 1915 թվականին սուլթանական Թուրքիան երկար ու բազմակողմանի պատրաստությունից հետո որոշեց իրագործել իր հրեշավոր պլանը: Պատրվակ բռնելով իմպերիալիստական պատերազմը, թուրք կառավարողները դեռևս 1914 թվականի աշնանը ամենուրեք զորահավաք անցկացրին և տարան բոլոր հայ տղամարդկանց, որոնք կարող էին զենք վերցնել: Մնացին կանայք, ծերունիներն ու երեխաները, ինչպես նաև որոշ թվով մտավորականներ: Զորակոչվածներին նրանք իսկույն քշեցին ռազմաճակատի ամենավտանգավոր հատվածները, որքան հնարավոր էր, ռայաբնակ վայրերից հեռու: Իսկ փետրվարյան մի ցուրտ գիշեր թուրք սպաներն ու ենթասպաները դռները ծեծելով քնից արթնացրին հայ բնակչությանը և պահանջեցին իրենց հանձնել ունեցած ամբողջ զենքը: Նրանք լավ գիտեին, որ իրենց պապենական օջախը քաջաբար պաշտպանել կարող են նաև հայ կանայք ու զառամյալ ծերունիները: Ոչ մեկին չէր կարելի նրանց մոտ զենք թողնել: Ապրիլի 24-ի գիշերն էլ ձերբակալեցին բոլոր հայ մտավորականներին: Անզեն բնակչությունը մնաց բոլորովին անպաշտպան:

Այնուհետև հայ ժողովրդի արնածարավ դահիճներ Թալիաթ փաշան, Էնվեր փաշան և մյուսները տեղահան արեցին ողջ հայությանը և, ոչ մեծ խմբեր կազմելով, քշեցին դեպի Միջագետքի անապատները: Բիթլիսի, Մուշի և Սասունի շրջաններից աքսորելու հարկ չեղավ, որովհետև տեղում կատարեցին ահավոր կոտորածը: Իսկ մյուս վայրերի բնակչությունից կազմված խմբերը ճանապարհին գնալով ավելի ու ավելի էին նվազում: Մի կողմից քաղցն ու ծարավը, տոթակեզ արևն ու լիակատար հյուծվածությունը, մյուս կողմից պահակախմբի անգութ մարդկանց կեռ թուրը,

սպանեցին գրեթե բոլորին: Կենդանի մնացին միայն հատուկենտ մարդիկ: Այդ նույն օրերին կառավարության հրամանով սկսեցին զինաթափել և փոքրաթիվ խմբերով ռազմաճակատից թիկունք բերել բանակում գտնվող հայերին ու ձորերի մեջ սպանել մինչև վերջին մարդը:

Եփրատը ներկվեց հայերի արյունով, ճանապարհները ծածկվեցին անմեղ մարդկանց դիակներով, ձորերը դարձան ընդհանուր գերեզմանատներ: Էրզրումի, Վանի և Բիթլիսի շրջաններում բնակվող 580 հազար հայերից կենդանի մնացին միայն 12 հազարը: Իսկ ամբողջ Արևմտյան Հայաստանի, Կիլիկիայի և Թուրքիայի հայաբնակ վայրերի երեք միլիոն հայ ազգաբնակչությունից կարողացավ փրկվել միայն կեսը, որը սփռվեց ամբողջ աշխարհով մեկ և ապաստան գտավ տարբեր մայր ցամաքներում:

Տեղ-տեղ հայորդիները հերոսական դիմադրություն ցույց տվեցին տասնապատիկ ու հարյուրապատիկ անգամ մեծաթիվ թշնամուն, բայց նրանք ի վիճակի չէին ահավոր սպանդի առաջն առնել:

Թուրքական յաթաղանի զոհ դարձան նաև մեր գրականության աստղերը՝ Գրիգոր Զոհրապը, Դանիել Վարուժանը, Սիամանթոն, Ռուբեն Սևակը, Ռուբեն Զարդարյանը, Թլկատինցին: Միայն Կոմիտասը փրկվեց, բայց նա էլ վշտից խելագարվեց և երկար տարիներ տառապեց Փարիզի հոգեբուժարանում...

Այսպես ծանր ու ողբերգական էր հայ ժողովրդի վիճակը սրանից հիսուն տարի առաջ: Սակայն թուրք բարբարոս փաշաներին չհաջողվեց լրիվ իրագործել իրենց հրեշավոր պլանները՝ բնաջնջել մեր ժողովրդին: Մեծ Լենինի գլխավորությամբ կոմունիստական կուսակցությունը ոտքի հանեց Ռուսաստանի աշխատավորությանը, տապալեց ատելի ցարիզմը և ստեղծեց նոր, սովետական իշխանություն:

Նոր կարգերը ազատություն ու լույս բերեցին բոլոր ճնշված ժողովուրդներին, իսկ հայ ժողովրդին փրկեցին նաև ֆիզիկական բնաջնջումից:

Այո, սիրելի ընթերցող, մեր այս երջանիկ օրվա ու ապահով կյանքի համար մենք պարտական ենք ազատարար Հոկտեմբերին: Մեր տառապած ժողովրդին այլևս ոչ մի վտանգ չի սպառնում, որովհետև նա իրավազոր անդամն է եղբայրական ժողովուրդների մի մեծ ու հզոր ընտանիքի, որը կոչվում է Սովետական Միություն:

Դու, պատանի ընթերցող, պետք է իմանաս այս ամենը, իմանաս և ավելի ջերմորեն ու հասկանալով նվիրվես մեր սիրելի Հայրենիքին, որի բաղկացուցիչ մի մասնիկն է Սովետական Հայաստանը՝ հիսուն տարի առաջ մարդկության ճանապարհին մորթված ու կիսամեռ ընկած, բայց այժմ լենինյան գաղափարներով վերածնված ու զարգացման բարձր մակարդակի հասած Հայաստանը:

ՎԱՐԴԵՎ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Փողոցը կարծես բարձունքից հոսում էր ցած, հոսում էր իր տներով, առուներով, փշատենիներով, և զարմանալին այն էր, որ տարիներ շարունակ հոսո՛ւմ-հոսո՛ւմ էր ու չէր թափվում ներքևի գոգավորության մեջ, որին հանդիպում էր իր ընթացքի ժամանակ:

Հիմա նա մտածում էր այդ մասին: Նա այդ մասին մտածում էր, երբ երեկոյան տուն վերադառնալիս մի պահ կանգ էր առնում բարձունքից գահավիժող փողոցի սկզբում և պատրաստվում էր լողորդի նման հոսանքին հակառակ լողալով բարձրանալ վեր, դեպի իր տունը: Սկզբում թեթևակի կռանում էր, աջ ուսը առաջ պարզում, կարծես ջրվեժի տակ էր մտնելու, և հետո դանդաղ, շատ դանդաղ սկսում էր բարձրանալ, ու միշտ նրան թվում էր, որ ոչ թե բարձրանում է, այլ այդպես թեթևակի կռացած և ուսը առաջ պարզած՝ կանգնած է տեղում, ու փողո՛ցն է գալիս հոսում իր վրայով, հոսում ու գնում է ցած և դրանից է, որ ծանոթ տները մի պահ հավասարվում են իրեն և հետ ընկրկում, գահավիժում:

Օրվա այն պահին, երբ նա տուն էր վերադառնում, սովորաբար դռների առաջ մայրեր էին լինում նստած, ջահել ու տարեց մայրեր, հետո երե-



# ԵՐԿԻՐ

ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

խաներ, որ հորով-մորով էին մեծանում: Երբ փողոցի հուշքը նրան բերում, համասարեցնում էր փշատենիների ամենաատվերոտ մասին, նա հանկարծ հիշում էր, որ մայրերի ու հորով-մորով մեծացող երեխաների կուտակումն այստեղ է, ու առաջին զգացումը՝ Լողորդի և հոսող փողոցի զգացումը, Լքում էր նրան ու բարձրանում էր մեկ ուրիշը, որն ամեն անգամ զարմանալի նոր ու չկրկնված էր թվում: Նա կանգնում էր այս հորով-մորով երեխաների մոտ ու մտածում, որ աշխարհում ամենածանր բանը որբությունն է, անհեր-անմեր մնալը: Այդ մտքից մի տեսակ կուչ էր գալիս նրա սիրտը, և նա սկսում էր ինքն իրեն խղճալ ու ողբալ:

Մինչև հիմա էլ ծերուկը երազում տեսնում էր հորն ու մորը, արևով ողողված իրենց պարտեզի որձաքարե պատը, դեպի գետը գնացող զառիթափ փողոցը, և իրեն՝ ծնողների շուրջը պտտվելիս, խաղալիս, ինչպես այս տղան, որ փշատենու ճյուղին հեծած՝ իջնում է փողոցի բարձունքից: Նա փորձեց բռնել ցած վազող տղային, ուզեց գոնե ձեռքով դիպչել իր մանկությանը և չկարողացավ, կտրուկ շարժումից քիչ մնաց վայր ընկներ ու սիրտը դրանից ավելի դառնացավ, ավելի սեղմվեց: Անօգնական, նոր ոտի ելած երեխայի նման, ծերուկը նայեց շուրջը և նրան թվաց, թե, իսկապես, ինքը հորով-մորով մեծացող երեխա է, և այս փշատենին, որ ճղատարած փռվել է ճանապարհի վրա, հայրական տան դռան առջևի այն փշատենին է, որն աշնանը դեռ հեռվից, կարմրուկ հանած երեխայի նման, կարմրին էր տալիս, իսկ այս չներկված դուռը իրենց պարտեզի դուռն է, որի հետևում զարմանալի ծառեր կային, ամվերոտ թփեր, կոտեմի մարգեր ու մի շուն, զառամյալ, դեղնագույն շուն:

Ծերուկն ավելի հուզվեց և վախից, որ հանկարծ ամեն ինչ կարող է կորցնել, կարող է կորցնել այս անսպասելի վրա հասած մանկության տպավորությունները, հոտերը, ձայները, գույներն ու պատկերները, փակեց աչքերը:

Փողոցի կենտրոնում կանգնած էր նա փակ աչքերով, և ոչ ոք չգիտեր, որ ծերուկի կոպերի տակ ծնվում ու մարում են տասնյակ տարիներ առաջ ապրած կյանքից կտորներ, որ նա հիմա իսկապես տեսնում է իր մորը, լսում է նրա ձայնը, հետո տեսնում է մի փոքրիկ տղայի, որ ինքն է, լսում է անցած գնացած անձրևի խշշոց, խշշո՜ց, որ էլ երբեք ոչ մի անձրև չի կրկնելու նրա համար:

— Բարի երեկո, Մարգար հայրիկ...

Ինչ-որ մեկը կարծես դիպավ նրա ուսին, կոպտորեն ցնցեց ու մանկության կախարդանքները հալվեցին, չքացան, թափվեցին ցած: Ծերուկը զարմացած նայեց շուրջը, ուզեց պարզել, թե ով էր իրեն բարևողը ու նկատեց, որ բարևողը ջահել այն հարսներից էր, որոնք նստում էին դռան շեմին ու գուլպա գործում:

— Բարի երեկո, աղջիկս:

Այո, ամեն ինչ վերջացավ, ամեն կախարդանք չքացավ: Ծերուկը դանդաղաքայլ շարունակեց բարձրանալ վեր:



— Բարի երեկո, Մարգար հայրիկ:

— Բարի երեկո:

— Որտեղի՞ց, Մարգար հայրիկ:

Կուզեր կանգ չառնել, չպատասխանել, բայց չէր կարող, չէր լինի, բարի երեկո ասողը հաջի Կարապետն էր, այն հաջի Կարապետը, որ իրենից երևի հինգ տարով փոքր է, բայց նստում է դռան շեմին, թաղբեհ է քաշում ու իրեն պահում է ավելի տարեց, քան ինքը: «Նա երևի երազներ չի տեսնում, իսկ մորն ու հորը երբեք չի հիշում».—ինքն իրեն ասաց Մարգար հայրիկը և, բարևելով հաջի Կարապետին, ասաց.

— Կիլիկիայեն կուգամ:

Հաջի Կարապետը քթի տակ ժպտաց: Նա գիտեր, որ Մարգար հայրիկը հաճախ է շրջագայում Կիլիկիայում, Զեյթունում, Մարաշում, Արաբկիրում, Մալաթիայում, թեպետ ոչ մի տեղ բարեկամ չունի, իսկ ինքը թեկուզ Կիլիկիայում եղբոր որդիներ ունի, Զեյթունում՝ քրոջ աղջիկներ, չի գնում, ծանր տեղը չի թեթևացնում, ինքը հաջի է և գիտի արժանապատվությունը բարձր պահել, իսկ սա, այս Մարգար հայրիկը երեխաների հետ զրույց է անում, հարսներին բարև է տալիս ու բարև առնում ամեն մարդուց, որ բարևում է իրեն:

— Հը՞, ի՞նչ կար Կիլիկիայում:

Մարգար հայրիկը որսաց նրա հեգնական տոնը, որ ծանոթ էր իրեն ու նեղանալու փոխարեն երկարորեն լռեց, հետո խոսակցին դառնալով՝ հարցրեց.

— Հորդ ու մորդ երազում տեսնո՞ւմ ես:

— Հո՞րս, մո՞րս.— շփոթվեց հաջի Կարապետը.— չէ՛, չեմ տեսնում:

— Իսկ ես տեսնում եմ:

Հաջի Կարապետը գլխի չընկավ, թե ինչու էր Մարգար հայրիկը այդ մասին հարցնում իրեն ու թե ինչու ասաց, որ ինքը երազում տեսնում է հորը, մորը:

— Իսկ առանց երազի, այնպես բաց աչքերով տեսնո՞ւմ ես:

Հաջի Կարապետը բոլորովին շփոթվեց: Եթե երազում չի տեսնում, էլ էապես բաց աչքերով ինչպե՞ս կարող է տեսնել:

— Իսկ ես տեսնում եմ.— չսպասելով հաջի Կարապետի պատասխանին, ասաց Մարգար հայրիկը: Հետո նա հանկարծ նստեց հաջի Կարապետի կողքին, առավ նրա ձեռքից թաղբեհը և արագ-արագ մեկը մյուսի հետևից հատիկները քաշելով՝ խոսեց.

— Դու ինձնից հինգ տարով փոքր ես, դու երկրից ես, Մասիսի հետևում մնացած երկրից:

— Հա՛, էդպես է, հինգ տարով փոքր եմ, երկրից եմ.— զարմացած կրկնում էր հաջի Կարապետը:

— Ասում ես, թե Կիլիկիայում եղբորդ տղաներն են ապրում, իսկ Զեյթունում՝ քրոջդ աղջիկները:

— Ասում եմ:

— Ինչո՞ւ չես գնում նրանց տեսնելու, կգնաս-կգաս՝ սիրտդ կբացվի, հետո՝ երկիր կգնաս, երկիր գնալուց լավ բան կա՞:

— Երկի՞ր.— զարմացավ հաջի Կարապետը:

— Բա՜, երկի՜ր: Ա՛յ, երբ գնում եմ Կիլիկիա, Զեյթուն, Մարաշ, Մալաթիա, թվում է, թե ամեն ինչ իր տեղն է, ոչինչ չեմ կորցրել:

— Երկիր ավտոբուսով, տրամվայով կամ տրոլեյբուսով էլ կգնա՞ն.— նորից զարմացավ հաջի Կարապետը:

— Իսկ դու ոտով գնա, որ հավատաս, թե իսկապես կերթաս երկիր, ա՛յ այսպես, մի փետ վերցրու ու գնա: Եվ երբ կհասնես Կիլիկիա, որևէ մեկի դռան առաջ նստիր, հանգստացիր, բարևիր անցնողին, հարցրու որտեղի՞ց է, ո՞ւմ տղան: Եվ հանկարծ կգտնես ծանոթիդ որդուն, կհիշես նրա հորը, նրանց տունը Ադանայում կամ Այնթափում ու ոչինչ կորցրած չես լինի, ասված վկա, ոչինչ, և կթվա թե կոտորած էլ չի եղել, այլ ծերացել ու մի տարի առաջ մեռել է քո ընկերը, բարեկամը: Իսկ ի՞նչ կա որ, կարող էին մեռած լինել, մենք



որ ապրում ենք, ա՛յ, դա է զարմանալի. ես արդեն 78 տարեկան եմ, իսկ դու....

— Հինգ տարով փոքր,— կանխեց հաջի Կարապետը, որ չէր սիրում իր տարիքը ասել:

— Հա՛, հինգ տարով փոքր, բայց ամբողջ օրը էսպես նստում ես դռան առաջ և երկիր չես գնում, ա՛յ, եթե երկիր գնաս, երազում մորդ ու հորդ կտեսնես, մանկությունդ էլ կտեսնես, հարազատ գյուղն էլ կտեսնես:

— Ես գյուղացի չեմ, Ադանա քաղաքից եմ:

— Ուրեմն Ադանան կտեսնես, ու ոչինչ, ոչինչ կորցրած չես լինի: Դա մեծ բան է, հաջի Կարապետ, մեծ բան է, երբ կորցնում ու ավելին ես ունենում:

— Ինչպե՞ս թե,— արդեն չորրորդ անգամ զարմացավ հաջի Կարապետը ու ինքն իր վրա բարկացավ այսքան զարմանալու համար:

—Այդպես, հենց այդպես, հաջի Կարապետ, կորցընում ու չես կորցընում, դա մեր ժողովրդի ուժն է: Ա՛յ, իմ տղան, որ երկիրը չի տեսել, նորից մտովի տեսնում է, և քանի որ նա տեսնում է, ուրեմն ոչինչ չենք կորցրել:



— Իսկ ես չեմ տեսնում,— դառնությամբ ասում է հաջի Կարապետը:

—Կտեսնե՛ս, հաջի, անպայման կտեսնե՛ս: Վաղը գնանք Մարաշ:

— Որտե՞ղ է Մարաշը:

— Ա՛յ, այնտեղ, Նորքի վերևը:

— Գնանք, բայց տրամվայ գնո՞ւմ է:

— Տրամվայ չէ, բայց ավտոբուս գնում է, իսկ մենք ոտքով կգնանք, երկիր պետք է ոտքով գնալ:

Ծերերը համաձայնվում են: Մարգար հայրիկը թազբեհը վերադարձնում է հաջի Կարապետին ու ոտքի ելնում, հաջի Կարապետը նույնպես ոտքի է ելնում, նա հինգ տարով փոքր է Մարգար հայրիկից ու դրա համար ոտքի է ելնում:

# Ն Ո Ր Ք

(Հատված)

Ժ

Բայց ահա բարձրացավ մի օր
Այն հողմը ուրագանն արյունոտ,
Սամումի նման ահավոր
Տարածվեց աշխարհի հունով,—
Ոտնատակ արավ աշխարհում
Բյուրավոր քաղաքներ ու շեներ,
Ավերեց երկիրը մեր ողջ
Եվ անապատ շինեց...

ԺԱ

Մանգաղի նման մահաբեր
Նա հնձեց օրերում այն սև
Բարձրաբերձ այգեստանը մեր,
Մեր երգի պարտեզը լուսե.
Շարժելով մահու գերանդին՝
Նա հնձեց բերքի նման սուրբ —
Նաիրյան գուսաններ անթիվ
Եվ ամբողջ մի անմահ ժողովուրդ...

ԺԲ

Եվ արդեն մոտենում էր մանգաղը
Մեր երկրի սրբազան բարդուն,
Որ կանգնուն էր դեռ ցուրտ ու պաղ
Արարատյան դաշտում,—
Երբ մրրիկ մի ուրիշ, փրկարար
Շառաչեց Հյուսիսից կենսաբեր
Եվ գարնան գետի պես վարար
Ողողեց լեռնաշխարհը մեր...

ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ

Մարգար հայրիկը դանդաղ բարձրանում է վեր, ու թեպետ փշատենիները դեռ չեն ծաղկել, նրան թվում է, թե իրենց տան դռան առջևի փշատենին արդեն բերք է տվել, կարմի՜ր-կարմի՜ր փշատներով է լցվել, ինչպես երկրում մնացած այն փշատենին, որ կարմրուկ հանած երեխայի նման կանգնած էր ճանապարհի վրա, երբ գաղթում էին...

Մարգար հայրիկը բարձրանում է, իսկ հաջի Կարապետին թվում է, թե արդեն, երբ փակում է աչքերը, տեսնում է հորը, մորը, տեսնում է Ադանան, և նա ինքն իր վրա զայրանում է, որ վաղուց չի փորձել փակել աչքերը և չի համաձայնվել Մարգար հայրիկի հետ:



# ԻՄ ՀԱՅԱՍՏԱՆ

Մոտեցեք քարտեզին: Անդրկովկասի հարավում Սևանա լիճը ցույց կտա, թե ո՛ր հանրապետության մասին է խոսքը: Ձեր ձեռքի փայտիկը շարժեցեք սահմանների վրայով: Ահա՛, այդ տարածությունը Սովետական Հայաստանն է: Այն լեռնաշխարհ, որի ամենացածր կետը ծովի մակարդակից բարձր է գտնվում 390 մետրով:

Ժողովուրդը իր բնաշխարհի, նրա ծաղկող քաղաքների ու գյուղերի մասին շատ երգեր է հյուսել: Դրանցից մեկը սկսվում է այսպես.

Ամեն հայի սրտի համար՝
Ուրախություն—իմ Հայաստան:

Այդ բանաստեղծ Գեղամ Սարյանի խոսքերն են: Բայց չէ, ի՞նչ եմ ասում: Դա ամեն հայի, մեծի թե փոքրի, մեզանից ամեն մեկի սրտի խոսքն է, որ զգացել ու արտահայտել է բանաստեղծը:

Մեր ժողովրդի կրած խոր ցավը դարձել է անցյալ: Այժմ կա մի մեծ ուրախություն, որ թանկ է ամեն հայի սրտի համար: Դա սրի ու հրի միջով անցած, կործանումից փրկված ու մեր ձեռքերով կառուցվող Հայաստանն է: Ինչպես տեսնում եք, իր տերիտորիայով փոքր, բայց իր կուլտուրայով, իր վաստակով, իր կառուցումներով ու մարդկանցով մեծ Հայաստանը: Մեր հպարտությունն ու մեր պարծանքը: Ողջ հայության վերածնված սովետական հայրենիքը:

Նայեցեք քարտեզին: Մայր Արարատ, որ շատ արյուն ու արցունք է տեսել և ծովերը լցրել հայոց վշտով, 1920 թվականից, երբ շնորհիվ կոմունիստական պարտիայի և լենինյան մեծ գաղափարների Հայաստանը հռչակվեց սովետական, դարձավ կենդանի վկա ու սահմանակից երկու հակադիր աշխարհի՝ լույսի ու խավարի միջև: Հոսում է գետը... այն ափում դարավոր հետամնացություն, մեռյալ դաշտեր ու գորշ ամայություն: Իսկ այս ափում՝ կյանք ու խինդում:

Մեկ տեսածդ՝ հազար լսածից լավ է: Եկեք այսօր շրջենք մեր հարազատ Հայաստանում, որն առասպելական փյունիկ թռչունի պես վերածն-



Լենինականի Վ. Ի. Լենինի անվան հրապարակը

վեր, ելել ու բարձրացել է իր իսկ մոխիրների միջից։

Գարնան առավոտ է, թարմ ու պայծառ առավոտ։ Ծաղիկների բույրն է կաթում վարդագեղ Երևանի փողոցներում։ Ինչպիսի՜ գեղեցիկ ու շքեղ պողոտաներ, հրապարակներ ու թատրոններ։ Սա ոչ թե քաղաք է, այլ՝ առասպելական մի հրաշք։ Բայց մենք չտարվենք ճարտարապետական կոթողներով, եթե ոչ, կուշանանք Լոռվան գնացող գնացքից։ Ահա և կայարանը, Սասունցի Դավթի փառահեղ հուշարձանը։ Մեր դյուցազուն Դավիթը, Քուռկիկ Ջալալին հեծած, կայծակնեղեն թուրը ձեռքին, թռչում է դեպի թշնամին։ Դավիթը՝ դա հենց ինքը, հայ ժողովուրդն է։ Նա անպարտ է, ու մենակ նա և՛ կառուցել գիտե, և՛ պաշտպանել իր հայրենիքը։ Այդպես կլինի միշտ։

Դեպի Լոռվան, Հրազդան, Սևան... Բայց այդպիսի քաղաքներ չի ունեցել Հայաստանը։ Երկնագույն էլեկտրաքարշը տանում է գնացքը Նորքի ծաղկած լանջով դեպի Քանաքեռի սարահարթը և ավելի հեռու՝ դեպի լեռները։ Սովետական Միության ամենաբարձր երկաթուղային ճանապարհն է այս, որն անցնում է ծովի մակարդակից գրեթե 2000 մետր բարձրության վրայով։

Եվ ահա մենք գնում ենք դեպի Սևան։ Այստեղից սկիզբ առնող Հրազդան գետի վրա, լճի հատակից սկսած, կառուցվել են Սևանի ստորերկրյա, Աթարբեկյանի, Գյումուշի, Քանաքեռի և, վերջապես, Երևանի առաջին, երկրորդ ու երրորդ խոշոր հիդրոէլեկտրակայանները։ Եվ հորդացած ջրերը հոսում են դեպի այգիներն ու ամայի դաշտերը կյանք ու կենդանություն պարգևում նրանց։ Այդպես, Սևանը գթառատ մոր նման բացել իր դարավոր պաշարները ժողովրդի երջանկության համար։ Լճի թանկագին ջրերը խնայելու նպատակով կառուցվել ու կառուցվում են հզոր ջերմաէլեկտրակայաններ՝ Երևանում, Հրազդանում, Կիրովականում, հիդրոկայաններ՝ Արփան, Դեբեդ և մյուս գետերի վրա։

Մի տեսե՛ք, թե էլեկտրականության այդ վիթխարի ուժը ինչպե՜ս է փոխել մեր երկրի դեմքը, բուռն թափով զարգացնելով ժողովրդական տնտեսությունը։

Տեսե՛ք, թե ի՜նչ թռիչք ենք գործել մենք։ Հեքիաթի պես է ու անհավատալի։ Հայաստանը չորս ու կես տասնամյակում չորս հազար տարվա ճանապարհ է անցել։ Մեկ շնչի հաշվով Սովետական Հայաստանը ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրում, քան այնպիսի զարգացած կապիտալիստական երկրներ, ինչպիսիք են՝ Իտալիան, Ֆրանսիան ու Ճապոնիան։ Իսկ ի՞նչ կա զարմանալու, եթե ավելացնենք, որ Հայաստանը 1913 թվականի ցարական Ռուսաստանից մեկուկես անգամ ավելի էլեկտրաէներգիա ունի։



Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատի ճոպանուղին

Բայց մենք հանկարծ չանցնե՞նք Լոռվանը։ Աբովյան, Էլար կայարանները վաղուց ենք անցել, և արդեն գնացքը դանդաղեցնում է ընթացքը։ Մոտենում ենք քաղաքին։ Տասնհինգ տարի առաջ այստեղ իրենց վրաններն էին խփել Գյումուշէսի կառուցողները։ Հիմա մեր աչքերի առջև բազմահազարանոց մի քաղաք է ամփոփում իր ներսում հաստոցների, իր գործիքաշինական, երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարաններով։ Քաղաքը աճում է արագորեն։ Անընդհատ նոր շենքեր ու ձեռնարկություններ են կառուցվում, մեքենաներ են տեղադրվում, գազի ու ջրմուղի խողովակներ են անցկացվում, նոր փողոցներ ու հրապարակներ են բացվում, պուրակներ ու ծաղկանոցներ են գցվում... այդպիսին է ահա մեր աչքերի առաջ բարձրացող Լոռվանը։

Բայց շտապենք. սուլում է էլեկտրաքարշը։ Ցտեսությու՜ն, Լոռվան, լույսերի քաղաք, մենք դեռ կվերադառնանք քեզ մոտ։ Առջևում Հրազդան ու Սևան քաղաքներն են, որոնք ծնունդ են առել

հիդրոկայանների կառուցումների հետ միաժամանակ։ Լեռնային գեղեցկուհիներ են սրանք իրենց կուլտուրական ու գիտական հիմնարկներով, իրենց գործարաններով, կառուցվող լեռնաքիմիական կոմբինատով, իրենց ժպտերես մանուկներով, իրենց եռուզեռով։

Անցյալում ընդամենը չորս քաղաք ուներ Հայաստանը, իսկ հիմա՝ 15 քաղաք և մոտ երկու այդքան քաղաքատիպ ավաններ։ Լենինականի, Կիրովականի, Ղափանի ու Ալավերդու կողքին այսօր հայտնվել են նոր անուններ՝ մեզ ծանոթ Լուսավան, Հրազդան, Սևան, հետո՝ Կամո, Բաղրամյան, Արտաշատ, Աշտարակ, Էջմիածին, Ստեփանավան, Հոկտեմբերյան... ո՞ր մեկը թվես, ո՞ր մեկն այցելես։

Եկեք, սիրելի բարեկամներ, թողնենք գնացքը և մի քիչ էլ շրջենք ոտքով, թե չէ՝ օրը կվերջանա ու չենք հասցնի շատ բան տեսնել։ Ահա թռչում ենք Սևանից, Վարդենիսի լեռների վրայով։ Դուք արդեն տեսնում եք մեր լեռնաշխարհի «կատարը»։ Հողմահարված, արևից խանձված պղնձագույն լեռներ, որոնք կարկատված են սրընթաց գետերով, խորունկ ձորերով ու կիրճերով։ Տեղ-տեղ անտառների կանաչ զանգվածներ, իսկ հեռվում կապույտ հորիզոնին ձուլված, օտարությունից տուն դարձող բարեկամի պես ձգվել է Հայոց ձյունածածկ լեռնապարը։ Առջևում որպես պահապանապետ կանգնել է հաղթահասակ Արարատը։

Թռչում ենք լեռների, սարահարթերի, հովիտների վրայով։ Ինչպես կինոյում, մեր աչքերի առջև փոփոխվում են պատկերները։ Սևանի հարավում ավազանին հաջորդում է Զանգեզուրը՝ պատմական Սյունյաց լեռնաշխարհը, ապա Եղեգնաձորը՝ իր հոյակապ Ջերմուկով, Մեղրին՝ թզի ու նռան այգիներով, ծխախոտագործությամբ նշանավոր Շամշադինը, Իջևանը։ Ալպիական արոտավայրերը ցույց են տալիս կաթնատու Ստեփանավանի, Կալինինոյի, Ղուկասյանի և մյուս շրջանների տեղը։ Ահա և թավ անտառները։ Դա Գուգարքն է, չքնաղ Լոռին՝ Ալավերդի և Կիրովական քաղաքներով։ Ահա և բարեբեր Շիրակի դաշտը, որի կենտրոնում Արագածին թիկնած բազմել է Հայաստանի երկրորդ քաղաքը՝ Լենինականը։ Անցնում ենք լեռան մյուս կողմը՝ Բասենի հովիտն է, նորաստեղծ սովխոզների նորատունկ այգիներով



Երևանի Կիրովի անվան գործարանի ացետիլենային նոր կոմպլեքսը

և, վերջապես, Արարատյան դաշտը, որ փռվել է մեր դեմ որպես արևահամ մրգերով լի ոսկե սինի։

Ամենուրեք, որտեղ առնում է մեր աչքը՝ խնամքով մշակված արտեր ու այգիներ են։ Այնտեղ աշխատում են հազարավոր գյուղատնտեսական մեքենաներ։ Այո՛, ավելի քան 10 հազար տրակտոր ու կոմբայն—ահա՛ այն ուժը, որ առաջավոր գիտությամբ զինված մեր կոլտնտեսություններն ու սովխոզները գործադրում են բարձր բերք ունենալու համար։ Նրանք երկրին տարեկան տալիս են տասնյակ հազարավոր տոննաներով հացահատիկ, խաղող, միրգ, բանջարեղեն, կաթ, միս և շատ ուրիշ գյուղատնտեսական մթերքներ։ Խաղողի ու մրգերի շնորհալի երկիր է դարձել Հայաստանը։ Նրա լայնքով ու երկայնքով ձգվել է Շիրակի, Հոկտեմբերյանի, Թալինի, Կոտայքի, Եղեգնաձորի, Գնդևազի, Արզնի-Շամիրամի և մյուս մեծ ու փոքր ջրանցքների ու ջրամբարների խիտ ցանցը։ Տարեկան հազարավոր հեկտար նոր հողեր են դառնում ջրարբի, որոնք մարդկանց անձնվեր աշխատանքով դառնում են ոսկեհասկ արտեր, բանջարանոցներ ու այգիներ։ Սոցիալիստական աշխատանքի փառաբանված շատ հերոսներ է տվել Հայաստանը։ Դո՛ւք էլ, երբ մեծանաք, ձեզանից շատերը, հավանաբար, նույնպես կդառնան հերոսներ։ Իսկ այժմ, իմ խելացի ուղեկիցներ, լավ սովորեցեք, լավ ճանաչեք հայրենի երկիրը։

Ուշադրությո՛ւն, մենք հիմա թռչում ենք Վարդենիսի, Զանգեզուրի, Բազումի, Գեղամա, Ծաղկունյաց և մյուս լեռների վրայով։ Դիտե՞ք, թե որքա՞ն գանձեր կան նրանց խորքում։ Է՛լ ոսկի, արծաթ, պղինձ ու երկաթ, է՛լ ալյումին, մոլիբդեն, է՛լ արճիճ, ցինկ... Եվ կարծում եք դրանցով վերջացա՞վ։ Հապա ոչ մետաղային հանքածոնե՞րը. աղ, մարմար, տուֆ, բազալտ, գրանիտ,

հրակայուն կավ, պեմզա, կրաքար... Եվ նորից չասացինք բոլորը: Շինանյութեր շատ կան, ինչպես նաև քիմիական հանքանյութեր՝ փոսֆորիտներ, բրոմ, մագնեզիում և զանազան հազվագյուտ էլեմենտներ:

Քիմիական արդյունաբերություն երբեք չի եղել Հայաստանում, իսկ հիմա այն զարգանում է չտեսնված թափով: Մեր գործարանները արտադրում են սինթետիկ կաուչուկ, հանքային պարարտանյութեր ու թունանյութեր, զանազան թթուներ, ռադիոտեխնիկական իրեր, ներկեր: Եվ որ ամենագլխավորն է՝ հայ քիմիկոսները թել են դարձնում Հայաստանի ժայռերը: Ու դեռ ինչպիսի՜ անակնկալներ ու հրաշքներ կան առջևում:

Իմ Հայաստա՜ն...

Նայեցեք քարտեզին, տեսեք, թե հեռավոր և հարազատ ուղիներով ինչպիսի՜ արտադրանք է ուղարկում նա ոչ միայն Սովետական Միության քաղաքները՝ Թբիլիսիից մինչև Մոսկվա ու Սախալին, այլև սոցիալիստական ու արտասահմանյան երկրները՝ Բուլղարիայից մինչև Բաղդադ ու Չինաստան, Հնդկաստանից մինչև Ինդոնեզիա ու Ամերիկա:

Գործարանների լայն դարպասներից դուրս են սահում մետաղահատ հաստոցներ ու շարժական էլեկտրակայաններ, հեծանիվներ, կոմպրեսորներ ու հիդրոտուրբիններ, ավտոդողեր ու կաբել, ժամացույցներ, գործվածքեղեն ու գորգեր, գինի ու կոնյակ, հանքային ջրեր... 124 տեսակ արտադրանք՝ վաթսունհինգ հանրապետություն ու երկիր:



Երևանի Մատենադարանի հայագիտության դահլիճում

Օրեր ու գիշերներ են հարկավոր պատմելու սննդի և թեթև արդյունաբերության այն գործարանների մասին, որոնք տարեկան կարող են տալ 13 միլիոն մետր մետաքսե գործվածք, ավելի քան 38 միլիոն զույգ գուլպաներ, յոթուկես միլիոն զույգ կոշիկներ, տասնյակ միլիոն շիշ գինի ու հանքային ջուր, տասնյակ հազարավոր տուփ պահածո, հազարավոր տոննա հրուշակեղեն... Այո, օրեր ու գիշերներ են հարկավոր մեր նվաճումների մասին պատմելու համար:

Օրը վերջանում է արդեն, և հիմա մենք պետք է վայրէջք կատարենք Երևանում: Տեսնո՞ւմ եք ինչպես է բռնկվել հորիզոնը բյուրավոր լույսերի մեծ հրացոլքից: Այդ մայրաքաղաքի անմար կրակներն են կանչում մեզ:

Երևա՜ն...

Ոչ միայն Հայաստանի, այլև մեր մոլորակի հնագույն քաղաքներից մեկն է նա, որի գլխով 2750 գարուն և ձմեռ է անցել, բայց հիմա է հնչում նրա անունն ու համբավը աշխարհում: Ոչ միայն արդյունաբերության, այլև գիտության ու արվեստի նշանավոր կենտրոն է դարձել Հայաստանի փարթամ մայրաքաղաքը, որը հեքիաթային արագությամբ է աճում: Տարեկան 15 հազար բնակարան: 80 հազարանոց բնակչությամբ 80 քաղաք կարելի է տեղավորել այսօրվա Երևանի տերիտորիայում: Բայց սրանից ավելի մեծ չափերով է աճել ու զարգացել մեր մշակույթը, մեր մտավոր ու հոգևոր կյանքը: Համոզվե՞լ եք ուզում, ահա ձեզ հրեղեն սյուների պես վառվող թվեր ու փաստեր: Եղեք ուշադի՛ր:

Առաջ մեզանում հարյուր մարդուց իննսուներ անգրագետ էր, իսկ հիմա այդպիսին հրաշքով էլ չես գտնի: Երկու միլիոնի հասնող բնակչության մոտ կես միլիոնը սովորողներ են, որոնց ուսուցանում են 22 հազար ուսուցիչներ ու դասախոսներ: Տասնմեկ բարձրագույն ուսումնական հաստատություն՝ նախկին որբերի երկրում: Հենց միայն պետական համալսարանում վեց հազար ուսանող է սովորում: Իսկ այնտեղ, Արաքսի մյուս ափին, Թուրքիայի 16 հազար գյուղ զուրկ է դպրոցից և մեկ միլիոնից ավելի երեխաներ չեն սովորում:

Եկեք համեմատենք զարգացած, բարձր կուլտուրա ունեցող երկրների հետ: Բնակչության ընկնող բժիշկների և սովորողների թվով Սովետա-

նակ Հայաստանը առաջ է անցել Անգլիայից, Ֆրանսիայից, Իտալիայից, Արևմտյան Գերմանիայից։

Շատ բան կարելի է պատմել Հայաստանի գիտության, արվեստի ու կուլտուրայի օջախների մասին։ Գիտությունների ակադեմիան, ուր այսօր 1200 գիտնականներ են աշխատում, կարևոր դեր է կատարում երկրում։ Բյուրականի հռչակավոր աստղադիտարանը, անվանի շատ հայ գիտնականներ, մտավորականներ ու արվեստագետներ, որոնք լուրջ ավանդ են ներդրել համաշխարհային գիտության ու կուլտուրայի գանձարանում մեծ ժողովրդականություն են վայելում։

Կգտնվի արդյոք մեկը, որ չիմանա, որ լսած չլինի աստղագետ Վիկտոր Համբարձումյանի, կոմպոզիտոր Արամ Խաչատրյանի, նկարիչ Մարտիրոս Սարյանի, դերասան Վահրամ Փափազյանի և շախմատի արքա Տիգրան Պետրոսյանի անունները։

Այո, շատ բան կարելի է պատմել Սովետական Հայաստանի մասին, որն ունի կարևոր շատ հաստատություններ, ինչպիսիք են՝ պետական օպերան, պետական թատրոնները, կրկեսը, պատկերասրահը, կինոթատրոնները՝ բոլոր վայրերում, երգի-պարի անսամբլը, սիմֆոնիկ նվագախումբը, 54 մեծ ու փոքր տպարանները, որոնք տարեկան շուրջ 10 միլիոն գիրք են տպագրում, 300 գրադարանները, որոնցից ամենախոշորն ունի մոտ 6 միլիոն գրականություն։

Չես կարող բոլորը հիշել, բայց և կա մեկը, որ չես կարող մոռանալ։ Մաշտոցի անվան Մատենադարանն է այդ։ Հայոց հնագույն ձեռագիր մատյանների ավելի քան 10 հազար հավաքածուն, որ հարստությամբ միակն է աշխարհում։ Դրանք սոսկ ձեռագրեր չեն։ Դրանք մեր ժողովրդի հոգու գանձերն են։ Արյունով գրված, կյանքի գնով փրկված, սերունդների մտքի ու սրտի կնիքը դրած, դարերի փոթորիկների միջով անցած, դարերը շալակած, սրից ու հրից անցած, տանջված ու ազատագրված ժողովրդի մեծ կուլտուրայի, բարբարոսների ձեռքից փախցրած փշրանքներն են դրանք, որ հիմա այնպես խնամքով պահպանվում են բազալտից կերտված լուսեղեն պալատում։ Երկար դեգերումից հետո այդ թանկագին մագաղաթները գտել են իրենց հանգրվանն ու հայրենիքը։

Հայրենի՜ք։ Ավելի քան մեկուկես միլիոն հայեր դեռ ապրում են աշխարհով մեկ ցրված, օտար ափերում։ Նրանց իրենց հողից ու ջրից դուրս է քշել թուրքի յաթաղանը։ Ոսոխները կամեցան ոչնչացնել մեզ, բայց այդ չհաջողվեց նրանց։ Ջարդեցին անտառը, սակայն արմատահան անել՝ անկարող էին։ Մենք այժմ ունենք փրկված հայրենիք, պետականություն, լեզու ու դրոշ։ Այդ դրոշը փարոսի պես լուսավորում է տուն դարձող բազմաթիվների ուղին։ Վերադարձողներին հասակ է նետել ջարդված անտառը, որ հզոր կաղնիներ ունի՝ արմատը հողում խրած և ոչ մի փոթորիկ այլևս սարսափելի չէ նրա համար։ Կանաչ աղմուկով է լցվել հայոց անտառը։ Բայց քանի դեռ աշխարհում թեկուզ մի հայ կմնա օտար երկրի տակ անօթևան, չի լռի մեր կարոտի երգը.

Ամեն-ամեն հայի սրտում՝
Անխորտակ տուն, իմ Հայաստան։

— Իմ Հայաստա՜ն...
Հոգուց ու սրտից են ծնվում այս բառերը։

ԱԼ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ



Կոմպոզիտորների ստեղծագործական տունը Դիլիջանում

Լուսանկարները՝ ՀՀԳ-ի ֆոտոխրոնիկա



# ԹՈՂ ՍՈՍԱՓԵՆ ԾԱՌԵՐԸ...



Լուսանում էր արդեն: Տղան թեև քնած էր, բայց գարնանային լույսն արդեն զգում էր կոպերի վրա, դրա համար էլ վերմակը քաշեց գլխին: Սակայն դա չօգնեց: Պատից այն կողմ ինչ-որ մեկն աշխատում էր: Քլունգի հարվածների խուլ ու միապաղաղ ձայն էր գալիս: Նա վերմակը մի կողմ նետեց ու մոտեցավ պատուհանին: Նրա ուշադրությունը գրավել էին ուրիշ ձայներ: Մի՞թե սարյակներն են: Այդպես էլ կար, սարյակներն եկել էին: Տղան այդպես էլ առանց հագնվելու կպել էր պատուհանին ու նայում էր պատշգամբի քիվի վրա ծլվլացող սևուկ թռչուններին: Հետո նորից նրա ուշադրությունը գրավեցին քլունգի հարվածները և արագ հագնվելով դուրս եկավ փողոց:

Հայրն ու մեծ եղբայրը առվի ափին փոսեր էին փորում: Հարցնելու կարիք չկար: Տղան իսկույն հասկացավ, որ ծառեր պիտի տնկեն: Բայց մի՞թե արդեն ժամանակն է: Դե, իհարկե, ժամանակն է, եթե հայրիկն արդեն սկսել է:

Եվ տղան տեղից պոկվելով վազեց դեպի դպրոց: Նրա դասերը երկրորդ հերթի էին, բայց նա շտապում էր ջոկատավարի մոտ:

Դեռ մի ամիս առաջ ջոկատավարն ասաց, որ այս տարի ավելի շատ ծառ պիտի տնկեն՝ զոհվածների հիշատակին: Հիսուն տարի առաջ, երբ իրենք դեռ չկային, մեծ աղետ է եղել հայ ժողովրդի կյանքում: Սուլթանական Թուրքիայի կառավարությունը ցանկացել է ոչնչացնել հայ ժողովրդին և ավելի քան մեկուկես միլիոն հայ է կոտորել:

Մեկուկես միլիոն անմեղ մարդկանց արյուն է թափվել, մնացածներին քշել են իրենց դարավոր հայրենիքից աշխարհի բոլոր կողմերը: Անցել է հիսուն տարի: Այժմ վերածնված հայ ժողովուրդն ուզում է հավերժացնել իր անմեղ զոհերի հիշատակը և որոշել է ամենուր անտառներ, անտառակներ ու պուրակներ տնկել: Մեկուկես միլիոն ծառ կտնկվի այս տարի, և ամեն մի անմեղ զոհի հիշատակին որպես կանաչ հուշարձան մեկական ծառ կբարձրանա:

Արդեն ժամանակը հասել է: Պետք է սկսել ծառատունկը: Հեռվից երևում է բարձունքի վրա կանգնած երկհարկանի դպրոցը, իսկ նրա հետևում՝ մերկ մի բլրակ: Որոշել են ծառազարդել այդ բլրակը և կոչել եղեռնի զոհերի անունով:

Եվ տղան հիշում է իր պարտքը, դրա համար էլ շտապում է դեպի դպրոց...

... ԻՍԿ ԴՈ՞ՒՔ, ԵՐԵԽԱՆԵՐ, ՉԷ՞ ՈՐ ԴՈՒՔ ԷԼ ՊԱՐՏՔ ՈՒՆԵՔ ՏԱԼՈՒ, ՉՄՈՌԱՆԱՔ, ԳԱՐՈՒՆՆ ԱՐԴԵՆ ԵԿԵԼ Է:



# ՉՄՈՒՇԿՆԵՐԸ

ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱԴԱՅ

(չուվաշական գրող)

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Օլխովի գյուղական սովետի նախագահ Նիկոլայ Վասիլևիչը կանչեց մոտ ութ տարեկան շիկավուն մի տղայի և կարգադրեց ինձ ուղեկցել մինչև Վազյուկ պապի տունը։

Ճանապարհին ես հետաքրքրվեցի ուղեկցիս անունով։

— Շչեմեն Շչիդորովիչ,— լուրջ ասաց նա իր անուն-հայրանունը։

Վազյուկ պապի տունը կանգնած էր միայնակ, համարյա Սվիյագայի ափին՝ մի բարձր, գեղեցիկ տեղ, որտեղից պարզ երևում էր ողջ շրջապատը։

Վազյուկ պապը տանն էր։ Մեզ տեսնելուն պես նա տնքտնքալով վեր կացավ բազմոցից, նստեց սեղանին ավելի մոտ և գրպանից հանեց ծխախոտաքսակն ու չիբուխը։ Որոշ ժամանակ լուռ նստելուց հետո, նա դանդաղ լցրեց չիբուխը և, բացելով օդանցքը, ծխեց։ Եվ միայն դրանից հետո ասաց.

— Թեյ չտաքացնե՞մ արդյոք։ Դրսից եկածին լավ է, չէ՞։

Իսկ երբ նստեցինք սեղանի շուրջը և Շչեմեն Շչիդորովիչը արագորեն իր կողմը քաշեց մեղրամանը, Վազյուկ պապը, չգիտես ինչու, հիշեց իր ծննդավայրը։

— Այստեղ, Օլխովկայի մոտ, Սվիյագայի ափերը այնքան զառիթափ չեն, որքան Սիմբիրսկում,— մտածկոտ, կարծես ինքն իրեն, ասաց նա։

— Դուք ծնունդով Ուլյանովսկի՞ց եք,— հարցրի ես։

— Բա ինչպե՛ս,— ինչ-որ հատուկ հպարտությամբ պատասխանեց պապը։— Իսկական, բնիկ... Այնտեղ է անցել համարյա ամբողջ կյանքս։— Եվ հանկարծ անսպասելիորեն հարցրեց.

— Ուզո՞ւմ եք մի բան պատմեմ իմ կյանքից։

Ափսեից կում-կում խմելով թեյը, Վայզուկ պապը անշտապ, բայց շատ սահուն սկսեց պատմել իր մանկությունից։ Առաջին իսկ բառերից ես կռահեցի, որ այնպիսի ունկնդիրներ, ինչպիսին ես էի, նրա մոտ, հավանաբար շատ են եղել, և նույն դեպքը նա ամեն անգամ հաղորդում է տարբեր ձևով, անընդհատ հարստացնելով նոր մանրամասնություններով ու փաստերով...

— Կիրակի օրերը մենք հավաքվում էինք Սվիյագայի վրա. սահում էինք փայտյա ինքնաշեն չմուշկներով ու սահնակներով։ Այնտեղ շատ էին լինում նաև չափահաս տղաներ ու աղջիկներ, ուսանողներ, գիմնազիստներ։ Բայց նրանք մեզ չէին սիրում և վռնդում էին։ Նրանք տանել չէին կարողանում չուվաշներին ու թաթարներին։

Մի անգամ մեզ մոտեցավ մի ռուս տղա։ Նա այնքան էլ բարձրահասակ չէր, շիկավուն էր՝ ճիշտ Սենյայի նման,— Վազյուկ պապը ցույց տվեց Շչեմեն Շչիդորովիչին, որը բերանը լայն բացած լսում էր պատմությունը։— Մոտենում և հարցնում է.

— Ուզո՞ւմ ես սղղալ չմուշկներով:

— Չմուշկներո՞վ: Իսկակա՞ն,— ես ուրախությունից շնչահեղձ էի լինում: Ես դեռ երբեք չէի սղղացել իսկական, գործարանում պատրաստված չմուշկներով:

— Վերցրո՛ւ: Սղղա՛:

Այս ամենն այնպես ստացվեց, որ ես նույնիսկ շփոթվեցի: Հետո, երբ հասկացա, թե բանն ինչումն է, նրան մեկնեցի իմ սահնակը: Եվ նա ժպտաց ու վերցրեց:

Հոյակապ չմուշկներ էին: Երբ դրանք կապեցի վալենկաներիս, ինձ զգացի ամենաերջանիկ մարդը:

Մի ժամ հետո նա նորից մոտեցավ ինձ:

— Ես գնում եմ տուն,— ասաց նա,— իսկ դու սղղա, չմուշկները ինձ կվերադարձնես հաջորդ կիրակի, ես կգամ այստեղ:

Այդպիսի հիանալի իրը նա վստահում էր բոլորովին անծանոթ մի տղայի: Այն էլ ինչպիսինի՛, ցնցոտիներով չուվաշին: Բայց ես չհրաժարվեցի, վերցրի չմուշկները, իսկ փոխարենը, որպեսզի նա չանհանգստանա, առաջարկեցի իմ սահնակը, որը չվերցրեց:

— Ինչի՞ համար,— ասաց նա:— Ամբողջ շաբաթ ես սղղալու ժամանակ չեմ ունենա: Իսկ չէ՞ որ դու դեռ չես սովորում:

Շալվարի և վերարկուի վրայից թափ տալով ձյունը, նա բարձրացավ զետափ: Ես երկար ժամանակ նայում էի նրա հետևից, տեսնում, թե ինչպես նա անցավ կամուրջը և անհետացավ չուվաշական դպրոցի դարպասի հետևում:

Բայց ինչպես իմացա հետո, նա այնտեղ չէր ապրում:

— Իսկ ո՞վ էր նա,— չհամբերեց Սենկան:

— Դա ես իմացա միայն երեք տարի հետո, իսկ թե որտեղ էր ապրում՝ քառասուն տարի հետո: Բայց դու, Սենկա, սպասիր... Ես, իհարկե, չէի խաբի նրան, մի շաբաթ հետո կվերադարձնեի չմուշկները, բայց պատահեց այնպես, որ հաջորդ կիրակի ինձ չհաջողվեց Սվիյագա գնալ:

Հայրս աշխատում էր սպանդանոցում: Ես երբեմն գնում էի նրա մոտ, օգնում դուրս տանելու թափոնները: Եվ ահա հայրս խնդրեց մի քանի ձեռնասայլակ թափոն տանեմ ու լցնեմ սառցանցքի մեջ: Ես տարա, բայց հենց սառցանցքի մոտ սայթաքեցի և ընկա ջուրը: Չեմ հիշում, թե ինչպես էր հասել եղբայրս և ինձ դուրս քաշել: Գիշերը բարձրացավ տաքությունս, իսկ առավոտյան չկարողացա վեր կենալ:

Եկավ ու անցավ կիրակին: Եվ ահա, երբ աչքերս բաց արի, տեսա ծանոթ դեմքը: Իսկույն ճանաչեցի նրան՝ աչքի կկոցը, շիկավուն մազերը... Նա շոշափեց ճակատս:

— Վերցրեք...Նրանք հիմա ինձ պետք չեն... Ես սղղացի...— շշնջացի ես:

— Ինձ էլ պետք չեն, ես քննությունների եմ պատրաստվում, այնպես որ չմուշկները թող մնան քեզ մոտ: Կառողջանաս, նորից կսղղաս:—Եվ նա ձեռքը դրեց ճակատիս:

— Դուք հայտնե՞լ եք բժշկին:



— Այո,— պատասխանեց հայրս:— Բայց նա այդպես էլ չեկավ. հավանաբար ժամանակ չունի, իսկ անուն հանած բժիշկներին հրավիրել չեմ կարող, փող չկա:

Հայրս այնպես էր ասում, կարծես ինչ որ բանում՝ արդարանում էր ասես ինքն էր մեղավոր, որ փող չուներ:

— Իսկ ինչի՞ համար էր պետք փողը։ Ինչի՞ համար,— միջամտեց Սենկան։

— Նրա համար, սիրելիս, որ առանց առանց փողի չէին բուժում, առանց այսպես էր. փող ունես՝ պարոն ես, չունես՝ դե սատկիր շան պես։

Լսելով հորս վերջին բառերը, ռուս տղան շտապ դուրս եկավ։ Քիչ հետո նա վերադարձավ մի բարձրահասակ, մորուքավոր մարդու հետ։ Նրա ձեռքին կար մի փոքրիկ ճամպրուկ, այսօրվա պես հիշում եմ՝ շագանակագույն էր, մետաղյա պսպղուն բռնակով։ Նա ճամպրուկը դրեց աթոռին։

— Այդ դո՞ւ ես լողորդը։ Դե, ծանոթանանք, ես բժիշկ եմ։

Նա ինձ խնդրեց հանել շապիկս, լսեց կրծքավանդակս, ճամպրուկից հանեց դեղորայք, սկսեց բացատրել հորս, թե ինչպես և երբ տալ։ Իսկ հրաժեշտ տալիս ինձ ասաց.

— Անկողնուց ոչ մի դեպքում վեր չկենաս։ Մի օր հետո այս նույն ժամին կանցնեմ։— Եվ ժպտաց.— Պա՞րզ է, լողորդ։ Շուտ առողջացիր։

Նրանց գնալուց հետո մեր տանը լռություն տիրեց։ Հետո հայրս ասաց.

— Այ, դրանք մարդի՛կ են։ Չէ՞ որ լինում է...— Եվ նայեց ինձ։— Լավ մարդու հետ ես ընկերացել, զավակս։ Ո՞ւմ տղան է, ի՞նչ է անունը։

Եվ հենց այդտեղ մենք հանկարծ հասկացանք, որ չենք հարցրել մեր բարեկամի ոչ անունը, ոչ էլ ազգանունը։

— Ախ, դո՛ւք...— դառն ափսոսանքով երկարացրեց Սենկան։

— Մոռացել են...

Արեգակի ոսկե շողը, որը դուրս եկավ ծմռան ամպերի արանքից, ճապաստակի նման խաղաց պատին ու սողաց մինչև Վազյուկ պապը։ Նրա մորուքն իսկույն փայլեց, և այժմ նա նման էր Ձմեռ պապին։

Այդ ժամանակից մեր ընտանիքում չէր անցնում մի օր, որ մենք բարի խոսքով չհիշեինք բժշկին և հատկապես նրա ընկերոջը՝ ռուս տղային։

Իսկ երեք տարի հետ ես իմացա նրա անունը։ Սիմբիրսկում թաղում էին ժողովրդական դպրոցների տեսուչ Իլյա Նիկոլաևիչ Ուլյանովին։ Հայրս և եղբայրս պատմում էին, որ թաղմանը շատ մարդ կար, ամբողջ գերեզմանոցը լիքն էր։ Հենց այստեղ էլ նրանք տեսել էին հանգուցյալ Իլյա Նիկալաևիչի որդուն՝ այն նույն ռուս տղային, որի անունը Վոլոդյա էր։ Լենինն էր, ուրեմն, դա։

Լսելով այդ խոսքերը, Շչեմեն Շչիդորովիչը իր առանց այն էլ խոշոր աչքերը չռեց պապի վրա, իսկ հետո ժպտաց։ Նա, հավանաբար, ցանկանում էր ինչ-որ բան ասել, շարժեց շուրթերը, բայց այդպես էլ ոչինչ չարտասանեց։ Իսկ Վազյուկ պապը նկատեց.

— Գուցե ես այն պատճառով եմ այսքան երկար ապրում, որ Լենինն ինքն էր իմ առողջությամբ մտահոգվում։

Դրսում ցուրտ ձմեռ էր։ Ուժեղ քամին վերանորոգման արհեստանոցից մեզ էր հասցնում տրակտորների հռնդյունը, մեխանիզատորները պատրաստվում էին գարնանը։

Եվ ամպերի արանքից ավելի ու ավելի հաճախ էր նայում մեծ, ջերմ ու պայծառ արևը։

Ռուս. թարգմ. ՀԱՅԿԱԶ ՄԱՄԻԿՈՆՅԱՆ





Իսկական հերոսական ճանապարհ է Մարտիրոս Սարյանի կյանքի ուղին: Եվ ահա այսօր ութսունհինգամյա վարպետը, Հայաստանի արևի երգիչը, գործով հերոս՝ Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում ստացավ: Եկեք, երեխաներ, մենք էլ շնորհավորենք մեր սիրելի Նահապետին ութսունհինգամյակի և պատվավոր կոչման առթիվ:



ԵՐԵՎԱՆՅԱՆ ԾԱՂԻԿՆԵՐ

ԱՐԱՐԱՏԸ ԴՎԻՆԻՑ







ԴԵՂՁԻ ՀԱՎԱՔԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՈՒՄ






Վեցերորդ «ե» դասարանի մոտով անցնելիս՝ ես նրանցից շատերին ճանաչեցի: տեսել էի ալբոմում նրանց լուսանկարները ու ճանաչեցի: Եվ ցանկություն զգացի պատմել նրանց՝ Պողոսյան Պայծառին, Մնացականյան Գագիկին, Արծրունի Իրինային, որը հիանալի արտասանող է, Հայրապետյան Գոհարիկին, Հովակիմյան Մարիային և մնացած բոլորին պատմել, թե ինչպիսին է ընկեր Ռոզա Ղարագյոզյանը, իրենց «ընկեր Ղարագյոզյանը»:

Սակայն մտածեցի. նրանք իրար հետ վաղեմի բարեկամներ են, այդ տղաներն ու աղջիկները և ընկեր Ղարագյոզյանը, և իրար նոր չեն ճանաչում: Արի, ավելի լավ է, գրեմ հենց այդ բարեկամության մասին, թող բոլոր երեխաները կարդան, իմանան և այդպես էլ արեցի:

Նրանք, երեսուներկուսն էլ, աճում մեծանում են այդ կնոջ աչքի առջև, նրա հոգատար ու խնամքոտ ձեռքի տակ: Նա մասնակից է նրանցից յուրաքանչյուրի հաջողություններին ու անհաջողություններին, նրանց հետ ուրախանում ու տրտմում է, գիտե այդ երեսուներկուսից յուրաքանչյուրի երազանքը՝ երեսուներկու երազանք, և իրեն երջանիկ է զգում նրանով... բայց ամեն ինչ հերթականությամբ:

Նա թերթում է դասարանի պատմության ալբոմը: Առաջին դասարանից սկսած՝ իրենք միասին են, ինքը և այդ երեխաները: Նա երբեք չի մոռանում կազմակերպել նրանց ծննդյան տարեդարձի տոնը: Ահա այդ տոների լուսանկարները: Շատ են: Արդեն չորրորդ տարին է՝ տոնում են: Ճերմակ շղարշանման զգեստների կրծքերին «հոբելյարի» մանուշակներ, մայիսյան թիթեռնիկների պես կայտառ, հրճվանքից փայլող դեմքերով՝ Դոշոյան Նելլին, Դովանջյան Մարիամը, Հովհաննիսյան Էլիզան, Հովակիմյան Մարիան, Հայրապետյան Գոհարիկը, և ահա նրանք՝ դեմքերին հանդիսավոր ու խորհրդավոր մի արտահայտություն, հիշում, մարում են շքեղ տորտի վրա վառվող տասնմեկ մոմերը. այդ օրը նրանք մի տարով ևս մեծացան, այդ օրը նրանք դարձան տասնմեկ տարեկան:

Յուրաքանչյուր լուսանկարի մասին նա հիշում, պատմում է: Եվ հասկանում ես՝ լուսանկարներից նայող առողջ, առույգ մանուկների անհոգ երջանկության մեջ նա իր համար գտնում է անսպառ բերկրանք: «Մենք այդպես չենք մեծացել».— թվում է պատահաբար ասում է նա: Դադարում է թերթել ալբոմը, հիշում է:

Պարսկական Ադրբեջանի Թավրիզ քաղաքում ապրում էր մի փոքրիկ աղջիկ: Տանից դուրս՝ բակում, փողոցում նա վազվզում, խաղում էր գույնզգույն շորեր հագած պարսիկ ու ադրբեջանցի երեխաների հետ և չգիտեր, թե ինչու տանը մայրիկն ու հայրիկը իր հետ խոսում էին հայերեն, իսկ դրսում, այդ երեխաների հետ ինքը պիտի խոսեր պարսկերեն: Նրան ամենից շատ դուր էր գալիս հայոց լեզուն և նա ուզում էր, որ բոլոր երեխաները խոսեին այդ լեզվով: Թաղի ծխական դպրոցում մայրը նրան առաջին անգամ սովորեցրեց հայերեն տառերը: Դպրոցում էլ այդ փոքրիկ աղջիկը իմացավ, որ իր հայրենիքը Պարսկաստանը չէ, այլ Սովետական Հայաստանը՝ բոլոր հայերի իսկական հայրենիքը: Ծխական դպրոցից հետո ուրիշ ուսումնական հաստատություն, որտեղ նա կարողանար իր ուսումը շարունակել հայերեն լեզվով՝ Թավրիզում չկար: Եվ նա ընդունվեց Թավրիզի ամերիկյան դպրոցը, ուր սովո-

րում էին անգլերեն։ Սովորեց, մեծացավ այդ աղջիկը, հայերեն լեզուն նրա համար դարձավ մանկության անուշիկ հուշերից մեկը, Սովետական Հայաստանը՝ չիրականացած երազանք։ Արդեն



հասկանում էր այդ մեծացած աղջիկը, որ պարսիկը պարսիկ է նրանով, որ խոսում է պարսկերեն, ադրբեջանցին նրանով է ադրբեջանցի, որ խոսում է ադրբեջաներեն։ Հասկացավ նաև, թե հայրենիքից հեռու օտար երկրների տակ ինչպես ճնշված են զգում իրենց հայ երեխաները։ Նա լավ ձայն ուներ, և նրան ասում էին. «Դու կարող ես առաջնակարգ երգչուհի դառնալ»։ Գոնե ուրիշները դրանում հավատացած էին։ Սակայն նրա ամենափայփայած իղձը դարձավ հայ երեխաներին մայրենի լեզու սովորեցնելը և նրանց երջանիկ ապագայի մասին հոգալը։ Տեղի հայ մանուկների մանկապարտեզում նա երկու տարի դաստիարակչուհի աշխատեց։ Ամուսնացավ մի հայ երիտասարդի հետ, որի ծնողները թուրքական ջարդերից պրծնելով՝ փախել էին Պարսկաստան։ Հետո վերջացավ պատերազմը, դա 1945 թվին էր, և 1946 թվականին ուրիշ շատ հայ ընտանիքների հետ նրանք նույնպես ներգաղթեցին Սովետական Հայաստան։ Երևանի Կիրովի անվան փողոցի վրա տուն կառուցեցին, ամուսինը՝ Վեհունի Ազատը ավարտեց Երևանի պետական համալսարանի երկրաբանական ֆակուլտետը, դարձավ գիտության թեկնածու և այժմ աշխատում է Հայկական երկրաբանական վարչությունում։ Ունեցան երեք երեխա, երեք սիրունիկ աղջիկներ՝ Ջուլիետան, Հասմիկը, Լիլիթը։ Նա ինքը ավարտեց Հայկական մանկավարժական ինստիտուտը և հայրենի հողի վրա, հայրենի երկնքի տակ հայ մանուկներին ահա արդեն տասնհինգերորդ տարին է, ինչ սովորեցնում է մայրենի լեզու և հայ գրականություն։

Հիմա նստած է նա իմ դիմաց, Եղիշե Չարենցի անվան դպրոցի հայոց լեզվի և գրականության դասատու Ռոզա Ղարագյոզյանը, միջին տարիքի, միջահասակ, քիչ լայն դեմքով և խոշոր, նկատող ու բարի աչքերով այդ կինը թերթում է իր դասարանի պատմությունը պատկերող ալբոմի էջերը։ Լուսանկարներից ժպտում, նայում են զվարթ, առույգ մանուկներ. նա մեկ առ մեկ տալիս է նրանց անունները, բոլոր երեսուներկուսինը, մեկ առ մեկ թվարկում է նրանց առավելությունները, բարեմասնությունները, և նրա ձայնում, նրա դեմքի արտահայտության մեջ նորից նկատելի է խորին գորովանք և հպարտություն։ Եղիզարյան Մելանյան շնորհալի դերասանուհի կդառնա, Զարգարյան Կարինեն նույնպես, Վարդանյան Էդիկը մեր ապագա Լեոնիդ Ենգիբարյանն է, Մուրադյան Հրահատը՝ բանաստեղծ, Վարդանյան Ոսկանը՝ նկարիչ, իսկ Շիրիկչյան Պերճուհին՝ աննման ասմունքող։ Գասպարյան Հուռիկը, Գասպարյան Կարինեն, Արսենյան Արամը, Մկրտչյան Կարինեն, Վեհունի Հասմիկը, Արծրունի Իրինան լավագույն սովորողներ են, ուսման առաջավորներ, վեցերորդ «ե»-ի պարծանքը։

Նրա մատները արդեն ով գիտե որերորդ անգամ թերթում են ալբոմի էջերը, սակայն զգում ես՝ հազարերորդ անգամ այս լուսանկարներին նայելիս էլ նրա դեմքը կլուսավորվի այսպիսի թախծոտ գորովով, այդպես միայն մայրն է թերթում իր զավակների կյանքի պատկերները ամփոփող ալբոմի էջերը։ Իսկ լուսանկարները շարունակում են իրենց պատմությունը երջանիկ, հոգատարությամբ շրջապատված և առողջ մանկության մասին։ Ահա նրանք՝ երեսուներկուսը, Սևանում, այդ դեռ երրորդ դասարանում էր, այն տարի, երբ դասարանը Երևանի արվեստի աշխատողների տանը ներկայացրեց «Մեսրոպ Մաշտոց» դրաման։ Առաջին անգամը չէր, դեռ երկրորդ դասարանում նրանք այդ նույն «պատասխանատու» բեմի վրա ներկայացրել էին «Չարի վերջը» և պետք էր տեսնել, թե ինչպիսի խանդավառ ընդունելության էին արժանացել։ Ահա շնորհալի հայ մանուկների դասարանը հինավուրց Կարմիր բլուրի ուրարտական ամրոցի ավերակնե-



Նկ. ՎԱՆԻԿ ԿԱԺՈՅԱՆԻ

# ՄԵՆՔ ՍԻՐՈՒՄ ԵՆՔ...

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ուր էլ նայես՝ սարե՛ր, սարե՛ր,
Սարե՛ր, ձգված մինչ երկինք,
Ուր էլ նայես՝ կանաչ ծառեր,
Ջա՛ն, իմ սիրուն հայրենիք։

Ա՜խ, ինչ լավ է, ինչ լավ է, որ
Մերն են սարերն այս սիրուն,
Աղբյուրն այս պարզ, գետերը՝ հորդ,
Թեկուզ փոքրիկ այս առուն։

Այս դաշտերը՝ ցորեն հացով,
Այգիները մրգաշատ,
Մերն է Սևանն արևացոլ
Ու երկինքը աստղաշար։

Մերն են գյուղեր ու քաղաքներ
Ու ճամփաներ լուսազարդ,
Այդ ո՞վ է քեզ այդպես պահել,
Հայրենի՛ք իմ հարազատ։

Սիրում ենք մենք մեր հայրերին
Ու մայրերին թանկագին,
Այդ նրանք են շահել-պահել
Հողն այս, ջուրն այս ու այգին։

Այդ նրանք են ծով քրտինքով
Պարգևել մեզ բյուր բարիք,
Կպահենք քեզ մե՛նք էլ սիրով,
Մեր աչքի լո՛ւյս հայրենիք։

րի մեջ, ալրաղաց հսկա կոմբինատում, մարմարի գործարանում, պատմական թանգարանում, Սովետական Հայաստանի գյուղատնտեսության նվաճումների ցուցահանդեսում և այլուր, և ամենուր իրենց անփոփոխ դասղեկի, իրենց ընկեր Ղարագյոզյանի հետ...

Թվում է նայում ես մի համերաշխ ընտանիքի լուսանկարների ալբոմը։ Եվ հարցնում ես նրան. «Իսկ հիմա ի՞նչ են անում ձեր դստրիկները՝ Ջուլիետան, Հասմիկը, Լիլիթը»։ Ջուլիետան սովորում է Կրուպսկայայի անվան դպրոցի 10-րդ դասարանում, երազում է ռադիոֆիզիկոս դառնալ։

Իսկ Հասմիկի լուսանկարը ես ձեզ ցույց տվեցի,— ասում է նա, իմ դասարանում է սովորում, երեսուներկուսի հետ միասին։ Վեհունի Հասմիկը հենց նա էր։ Երկու «չորս» ունի, աշխատում է դրանք էլ վերացնել։ Ուսուցչուհի կդառնա։

Իսկ Լիլիթը դեռ փոքրիկ է, երկու տարեկան, նույնիսկ դեռ մանկապարտեզ էլ չի գնում։

Եվ ընկեր Ղարագյոզյանը թերթում է ալբոմի էջերը... Նրանք երեսուներկուսն են, երեսուներկուսն էլ մեծանում, աճում են նրա աչքի առջև, նրա խնամքոտ ձեռքերի տակ. նա գիտե նրանցից յուրաքանչյուրի երազանքը, երեսուներկու երազանք։ Նա պատմում է նրանցից յուրաքանչյուրի մասին, ինչպես մայրը կարող է պատմել իր հարազատ զավակների մասին։ Նա դարձնում է լուսանկարներ կըրող վերջին էջը, ձեռքը սահեցնում է դատարկ էջերի վրայով. «Իսկ այս էջերում կլինեն նրանց վաղվա լուսանկարները։ Նրանք ավելի մեծացած և խելացի կլինեն», ասում է նա։ Եվ զգում ես՝ այդ կնոջ միակ ցանկությունն է, որ իրականանան նրանց բոլորի լավագույն երազանքները, որ նրանք բոլորն էլ դառնան կիրթ, բազմակողմանի զարգացած և հասարակության համար առավել պիտանի մարդիկ, բոլոր երեսուներկուսն էլ անխտիր, առանց որևէ վերապահության։ Դա հիմա նրա ամենանվիրական իղձն է։

Կիջնի գիշերը, մեր մեծ քաղաք Երևանը կամաց-կամաց կմարի բյուրավոր լույսերը, լայն փողոցները կլռեն։ Իրենց խաղաղ հարկերի տակ, մահճակալների վրա աչիկները անվըրդով խփած կլինեն Մանուկյան Գայանեն, Հայրապետյան Գոհարիկը, Արսենյան Արամը և մյուս երեսուներկու աղջիկներն ու տղաները։ Քաղաքի հյուսիսարևելյան մասում, Կիրովի անվան փողոցի վրա մի պատուհան մինչև ուշ գիշեր լուսավորված կմնա։ Եվ այդ աղջիկներն ու տղաները կարող են քնել հանգիստ։ Նրանց կյանքի դեռևս նոր սկսվող ճանապարհին կա հոգատար ու վստահելի մեկը, որը հիմա, այս ուշ գիշերին՝ դեռևս վառ մնացած լույսի տակ, իրենց աշակերտական բարալիկ տետրակների վրա կըռացած, խնամքով ու մանրակըրկիտ, իրենց թույլ տված բոլոր սխալներն է ուղղում։

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

*Իմ սիրելի երեխաներ։ Ամեն անգամ, երբ խոսք է բացվում Հայրենիքի մասին, իմ սիրտը լցվում է համայնապարփակ սիրով ու հոգիս պատում է մի անսահման ջերմ զգացում։ Հոկտեմբերի մեծ արևով վերածնված իմ Հայաստանում տեսա աշխարհաշեն կառուցումներ, որոնք կմրցեն Փարիզի հրաշակերտ շինվածքների հետ, ուրախացա իր կյանքի տերը դարձած բանվորի ու գյուղացու վաստակով։ Հայրենիքը ինձ համար ամեն բանից թանկ է ու վսեմ։ Դուք էլ, իմ սիրելի բալիկներ, լինեք ռուս, ուկրաինացի, ադրբեջանցի, թե վրացի, սիրեցեք մեր Հայրենիքը, մեր ժողովրդին։ Ամբողջ կյանքում ծառայեցեք մեծ Լենինի ստեղծած պետությանը, այն պետությանը, որի համար անձնվիրաբար կռվել են ձեր հայրերն ու մայրերը, երազեցեք, խիզախեցեք, կառուցեք նորը, նվիրականը՝ կոմունիստական հասարակարգը։*

Ավ. Իսահակյան

# Լ Ո Ր Ա Գ Ե Տ

*ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ*

Լորագետը... Փոքրիկ մի գետ,
Փոքրիկ մի գետ՝ խենթ ու խոնարհ,
Խոսում է իր ափերի հետ
Լեռների մեջ մեր հայրենի
Եվ տանում է ձորերն ի վար
Գեղեցկությունն իր վայրենի...
Գալիս է նա քարերն ի վար
Հին Տաշանի ձոր-ամրոցից,
Գալիս է նա քարերն ի վար
Արագեղից ու Մրոցից։
Գալիս է նա առու-առու,
Գալիս է նա վտակ-վտակ,
Խառնըվում ու գետ է դառնում
Ուղտասարի ոտքերի տակ...
Ուղտասարի ոտքերի տակ՝
Հսկայական քարե մի գուռ,
Քարե մի բերդ հսկայական,
Քարե պարիսպ ու քարե դուռ.
Այդ քարեղեն բերդ-գուռի մեջ,
Ոտից-գլուխ փրփուրի մեջ,
Եռում է նա ու հերսոտում,
Գազազում է ու միսն ուտում,
Պտտվում է հոգնած, քրտնած,
Ու վերջապես դուռը գտնում,
Դուրս է թռչում կապը կտրած։
Կապը կտրած դուրս է թռչում,
Ափին տալով հևում, ճչում,
Բայց չհասած Լեռնաշենին,
Դեռ չհասած նրա շեմին,
Ամբողջովին ջրվեժ դարձած,
Ժայռի գլխից ընկնում է ցած։
Ընկնում է ցած ու կատաղում,
Քարե անտակ կաթսայի մեջ
Ինքը իրեն աղում, մաղում,
Իրեն տանջում ու չարչարում,
Մտնում է ձոր, փրփրակալում,
Խփում քարին, ետ է գալիս,
Գժված գլուխն ափին տալիս,
Ուշքի գալով ոտնում է նա,
Նորից ընկնում քարի վրա.
Քարը կրծում,
Բաշը ցնցում,
Ավազ ու խիճ խառնում իրար
Ու թռչում է քարերն ի վար։
Քարերն ի վար, աղաղակով,
Անց է կենում Լոռի տակով,
Կուզ քարափի փորի տակով,
Հոնքի տակով Հանդաքարի...
Գնում է նա ոլոր-մոլոր
Ու բախվելով ժայռի մի նոր՝
Մռնչյունով մի կատաղի
Ջորն է մտնում Գետաթաղի։
Գետաթաղի մթին ձորում
Գիրկն է առնում նա Սալկուտին,
Նորից ճչում, նորից գոռում,
Խփում ճամփի քար ու խութին
Ու գնում է փրփուր տալով։
Փրփուր տալով... Ու կուլ տալով
Նա բարկությունն իր սպիտակ,
Կանգ է առնում Դարբասի տակ։
Դարբասի տակ, խոր մի վիհում...
Կանգ է առնում, մի քիչ նիրհում...
Հետո նորից ճամփան գտած,
Նորից քափ ու քրտինք մտած,
Մինչև մի նոր ելք է ճարում...
Ելք է ճարում ու ժպտալով
Կեռիկ-մեռիկ ճանապարհով
Մտնում է մի փոքրիկ հովիտ...
Գետը հովտի բույրերն առած,
Ծառ ու ծաղկի գույներն առած,
Մեջքը ծռում, ծունկը ծալում,
Շառաչելով տագնապահար
Ժայռերի մեջ ու քերծերի,
Փշրվելով քարերն ի վար,
Կիրճն է մտնում նա Լծենի...
Ու կիրճն ի վար այդ քարքարոտ,
Աղաղակով որոտալի
Գնո՜ւմ, գնո՜ւմ ու Շամբի մոտ
Խառնըվում է Որոտանին։
Բայց դրանով երկրի վրա
Չի վերջանում կյանքը նրա։

* * *

Լորագետը...
Գալիս է նա սարերն ի վար
Գագաթների մութ ամպերից,
Գալիս է նա ձորերն ի վար
Անձավներից ու շամբերից...
Խենթանում է գարնանը նա,
Երբ սարերում բարձրագնա
Ձյունի հսկա սարը լալիս,
Սարի վրա փուլ է գալիս
Ու փշրվում,
Ու փրփրում...
Խենթանում է գարնանը նա,
Դուրս է գալիս իր ափերից,
Ծառս է լինում և անխնա
Քերծ է պոկում քարափներից,

*Երբ ես 1915 թվականի սեպտեմբերին երեք ամսվա արձակուրդից հետո Բեյրութից Հալեպ վերադարձա, սարսափով տեղեկացա, որ հայկական ջարդերի մի նոր, շատ ավելի սարսափելի շրջան է սկսվել, քան Աբդուլ-Համիդի ժամանակներում, որոնք նպատակ ունեն արմատապես բնաջնջել հայ ժողովրդին՝ խելոք, գործարար ու դեպի առաջադիմությունը հակված մի ժողովրդի, և այն ամենը, ինչ պատկանում է հայերին՝ հանձնել թուրքերի ձեռքը:*

(Հալեպի գերմանական դպրոցի ուսուցչապետ դոկտոր Մարտին Նիպագեի՝
գերմանական ժողովրդի ներկայացուցիչներին հասցեագրված նամակից)

Քերծ է պոկում, տուն ու տանիք,
Դառնում աղետ, դառնում չարիք,
Քշում, տանում սյուն ու գերան,
Քշում, տանում ինչ պատահի,
Տանում մինչև գետաբերան
Ու տալիս է որոտալով
Մութ ջրերին Որոտանի:
Խենթանում է գարնանը նա,
Վիճում, կռվում ինքը իր հետ:
Կարծում է, թե ինքն է որ կա,
Մի աշխարհ է, մի Լորագետ...
Բերանն ընկար՝ պրծում չկա,
Մի վայրկյանում քեզ կուլ կտա:

* * *

Լորագետը...
Բխում է նա երակ-երակ
Ժայռերի բաց երախներից,
Բխում է նա երակ-երակ
Նրանց քարե երակներից,
Բխում է նա երակ-երակ
Նրանց քարե երազներից...
Եվ ամռանը, երազի պես,
Մտնում այգի, մտնում պարտեզ,
Ջուր է տալիս կաթիլ-կաթիլ
Ծաղիկներին ու վազերին,
Ջուր է տալիս կաթիլ-կաթիլ
Նրանց ծարավ երազներին:
Ցող է դառնում նա մարգերում,
Կանաչների վրա թավիշ
Եվ ծառերի երակներում
Դառնում է նա կյանք ու ավիշ.
Երազի պես սարից գալիս,
Երազի պես անցնում ձորով,—
Ձորին շողք ու շուք է տալիս,
Ջրաղացին՝ երգ ու կորով...

* * *

Լորագետը...
Աշնանը նա մաշվում, մաշվում
Եվ իր անձուկ հունն է քաշվում
Հիվանդի թույլ շնչառությամբ:
Վշվշում է ձորերն ի վար,
Հազիվ խփող զարկերակով,
Անցնում քար ու քերծի տակով
Ու գնում է խենթը՝ խոնարհ,
Գնում է նա ու խուլ ճչում...
Ափերի բաց քար ու խիճից,
Մամուռի և տիղմի միջից
Կարմրախայտի հոտ է փչում:
Թավալվում է նա մեգի մեջ,
Գալարվում է մեջքի վրա...
Եվ լսում են ծառերը մերկ
Խեղդված ու խուլ երգը նրա:
Քարերն ի վար ծորում է ցած,
Հոգնած քամու ձեռքից առնում,
Որբևայրի ու որբացած
Տերևներն է հետը տանում...
Հազար տեղից ծալվում է նա,
Ծռվում է նա ու խեղճանում,
Ոտքի վրա հալվում է նա,
Սակայն կյանքը չի վերջանում...

* * *

Լորագետը...
Գարնանը՝ գիժ, աշնանը՝ հեզ,
Ափերն ի վար՝ եղինջ ու սեզ,
Ափերն ի վար՝ մոշ ու մացառ,
Խնձորի ծառ ու խնկի ծառ,
Ուռիների վարսեր ծուփ-ծուփ,
Նազ ու տուզով թզենու թուփ,
Թփե՜ր, թփե՜ր, թփեր վարդի
Եվ շալիկը փոխած բարդի...
Լորագետը...
Ափերն ի վար՝ մամռակալած,
Մամռակալած քերծ ու քարափ,
Ափերն ի վար՝ բերդ ու մատուռ,
Վերն՝ արեգակ, երկինք մաքուր:
Լորագետը...
Մեջն՝ արեգակ, երկինք մաքուր,
Ափերն ի վար՝ մոռ ու մասուր,
Ափերն ի վար՝ ծփանք ու երգ,
Անտառ ու հերկ,
Սարե՜ր, սարե՜ր թիկնած իրար
Ու շեն շեներ ափերն ի վար...

* * *

Լորագետը...
Լեռների մեջ նման է նա
Կապույտ-կապույտ մի երազի...
Հարցրեք նրան, և նա կասի.
— Փոքրիկ, անհայտ մի գետ եմ ես,
Գարնանը գիժ, աշնանը՝ հեզ.
Ես ոչ ծույլ եմ, ոչ էլ՝ անբան,
Փոքրիկ եմ ես, բայց իմ ճամփան
Չի վերջանում Որոտանով:
Խառնըվելով Որոտանին,
Լցվում եմ ես Որոտանով
Ու նրա հետ որոտալով՝
Կիրճերն ի վար տանում եմ ես
Իմ կորովը Տաթևգէսին:
Գնում եմ ես, որ մասնակցեմ
Լույսի տոնին ու հանդեսին...
Լույս դառնալուց հետո էլ դեռ
Պիտի գնամ, հասնեմ ծովին:
Փոքրիկ եմ ես բոլորովին,
Բայց հարուստ եմ իմ տվածով...
Թե չլինեն գետերն ինձ պես,
Ոչ մեծ գետը գետ կլինի,
Ոչ էլ ծովը կլինի ծով...
Գետն ամեն տեղ գետ է մնում
Ու, թե գետ է, ծովն է գնում:

# ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԵԿՈ

ՄԻՔԱՅԵԼ ՇԱԹԻՐՅԱՆ

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Դեհ, Քեթո ջան, տեսնո՞ւմ ես՝ վերադարձա,— ասում էր նա կնոջը։— Դեռ մեկուկես ամիս էլ չի անցել, իսկ ես արդեն վերադարձա։

Նա նստած էր սեղանի մոտ, շրջապատված ընտանիքի անդամներով։ Չորս տարեկան փոքրիկը, Սերյոժկան, տեղավորվել էր ծնկներին, տասնհինգամյա դալկադեմ Մարիամը, որն արդեն սկսում էր օրիորդ դառնալ, նրան հպված, լուռ շոյում էր ուսը, իսկ տասնչորս տարեկան Լևոնը, իր մեջ զսպելով հորը գրկելու ցանկությունը, միայն մեղմ ժպտում էր։ Ինչ վերաբերում է կնոջը՝ Եկատերինա Սերգեևնային, ապա նրա հայացքում վատ թաքցրած տագնապ ու վախ կար։

Բայց ահա Սերյոժկան ձգվեց հոր գրկում և, շոշափելով մազակալած ծնոտը, հարցրեց.

— Դու ինչո՞ւ ես այսպես...

Եվ նոր նա հասկացավ ամեն ինչ։ Դե իհարկե, չէ՞ որ երբ նա մեկնեց Բաքվից՝ ծնոտին խոզանակի նման ծռծռացող կարճ մազերի փոխարեն սև թույր մորուք կար, իսկ վերին շուրթի վրա՝ հաստ, դեպի ցած իջնող ծայրերով բեղեր։ Եվ հագին էլ քաղաքացիական զգեստ էր, այնինչ հիմա վերադարձել է հասարակ զինվորի հնամաշ ու կեղտոտ հագուստով։ Այո, նրանք հասկանում են, որ այս կերպարանափոխության մեջ ինչ-որ տագնապալի ու վատ բան կա։ Այնքան վատ, որ առայժմ այդ մասին գուցե պետք չէ նույնիսկ հարցեր տալ։

— Դե սա ոչինչ, Սերյոժա ջան,— ասաց նա ծիծաղելով։— Ա՛յ, ես հիմա կլողանամ, շորերս կփոխեմ, իսկ մի քանի օրից բեղ-մորուքս նորից կաճեն և էլի առաջվա նման կդառնամ։

Եկատերինա Սերգեևնան մի արագ հայացք նետեց ամուսնու վրա և նորից փախցրեց հայացքը։

— Տեսնում եմ, իմ այս խուզած մորուքն ու զինվորական շորերը շատերին է շփոթեցնում,— դարձյալ ծիծաղեց ամուսինը։

Եվ ապա անհոգ տեսքով պատմեց, թե ինչ էր պատահել տուն գալուց առաջ։

Նա կայարանից մի խումբ զինվորների հետ գնացել էր ուղիղ Բաքվի սովետ։ Դռան մոտ կանգնած կարմիրգվարդիականները՝ հին բոլշևիկներ, որոնց բազմիցս հանդիպել էր, ներս չէին թողել նրան, հայտնելով, թե հիմա ընկեր Ջափարիձեի մոտ գործադիր կոմիտեի նիստ է և կողմնակի անձանց այնտեղ մտնել չի կարելի։

— Ի՞նչ կողմնակի անձ, շշմա՛ծ,— բարկացել էր նրա հետ եկած զինվորներից մեկը։— Չե՞ս տեսնում, որ սա ընկեր Շահումյանն է։

Եվ նոր միայն կարմիրգվարդիականները շվարած գոչել էին.

— Ստեփա՞ն Գևորգևիչ, մի՞թե այդ դու ես...

Եվ նույնն էլ տեղի էր ունեցել, երբ նա մտել էր Ջափարիձեի կաբինետ։ Ոչ ոք ուշք չէր դարձրել անծանոթ զինվորի վրա, որը դռան մոտ կանգնած՝ նրանց էր նայում։ Միայն երբ Շահումյանը, ձեռքը բարձրացնելով, ձայն էր խնդրել, բոլորը շրջվել էին, զարմանքով նայելով անծանոթին։ Ու հետո, ճանաչելով, մոտ էին վազել, գրկել ու համբուրել...

Երեխաները քահ-քահ ծիծաղում էին, այդ պատմությունը լսելիս։ Ահա թե ինչու է հայրիկը այսպես փոխել իր կերպարանքը. միայն կատակի համար։ Եվ իրոք, ինչքա՜ն ամեն ինչ ծիծաղելի է ստացվել։

Մենակ Եկատերինա Սերգեևնան էր, որ, թեպետ, նույնպես ժպտում էր, սակայն աչքերի մեջ առաջվա նման վախ ու տագնապ ուներ։

—Ուրեմն, արդեն տեսե՞լ ես Ալյոշային,— հարցրեց նա։— Իսկ ինչո՞ւ չբերեցիր հետդ մեզ մոտ։

— Ինքս չուզեցի... Ասացի, որ այս առաջին երեկոն ամբողջովին նվիրելու եմ քեզ ու երեխաներին։ Իսկ մերոնց վաղը կհանդիպեմ։

Եկատերինա Սերգեևնան, չգիտես ինչու, ասաց «հըմ» և բարձրացավ տեղից։

— Գնամ նայեմ լողանալու ջուրը տաքացե՞լ է... Եվ հետո, թեյ պետք է դնել։

— Սպասիր, իսկ Սուրիկը որտե՞ղ է,— հարցրեց Շահումյանը։

Սուրիկը ամենամեծն էր, տասնվեց տարեկան տղան, որն իր անունը ստացել էր Ստեփան Գևորգևիչի մարտական ընկերոջ՝ Սուրեն Սպանդարյանի պատվին։

— Իր ջոկատումն է,— պատասխանեց Եկատերինա Սերգեևնան։— Չէ՞ որ ես քեզ գրել էի. նա մտել է կոմունիստական մարտական ջոկատը։



Այդ ջոկատը սկսել էր կազմակերպվել դեռ Շահումյանի Բաքվում եղած ժամանակ, միայն կուսակցության անդամներից, և տեղավորված էր Սարգիս Մարտիկյանի բնակարանում։ Սակայն ինչպես են գործերն այնտեղ հիմա, նա այլևս տեղյակ չէր։

— Այո, գրել էիր, բայց ես այդպես էլ չհասկացա՝ ի՞նչ է անում նա այնտեղ։

— Ասում է՝ կապավոր եմ, — Եկատերինա Սերգեևնան, կարծես խուսափելով հետագա հարցուփորձից, արագ դուրս գնաց։

Լևոնը, քրոջ ուսի հետևից ինչ-որ որ խորհրդավոր նշաններ էր անում հորը, բայց Շահումյանը ոչինչ չհասկացավ, որովհետև Մարիամը հանկարծ շշնջաց նրա ականջին։

— Հայրիկ, քեզ համար այնտեղ շա՞տ վատ էր։

— Իսկ ինչո՞ւ ես այդպես կարծում։

— Քո գնալուց հետո մայրիկը գիշերները միշտ լաց էր լինում։

— Այո՞, — Ստեփան Գեորգևիչը շրջվեց և ուշադիր նայեց աղջկան։ — Իսկ ինչո՞ւ։

— Նա վախենում էր, թե քեզ... կսպանեն։

Շահումյանը մի պահ խորհում էր այդ խոսքերի վրա, հետո հանկարծ բարձրացրեց ծնկից Սերյոժկային ու մեկնեց քրոջը։

— Ա՛ռ... Սպասեցեք այստեղ, ես գնամ նրան հանգստացնեմ։

Ինչպես և նա կարծում էր, Եկատերինա Սերգեևնան ոչ թե վաննայի սենյակումն էր, այլ նստած էր խոհանոցում, դեմքն ափերով ծածկված։



— Քեզ ի՞նչ է եղել, Քեթո, — Ստեփան Գեորգևիչը զգուշությամբ հեռացրեց նրա ձեռքերը դեմքից և նայեց արցունքներից մառախլված աչքերի մեջ։

— Ոչինչ, սիրելիս, ոչինչ, — ջանում էր ժպտալ Եկատերինա Սերգեևնան։

— Ոչ, ես ուզում եմ իմանալ, թե ինչի՞ց է այսքան փափկել իմ արիասիրտ կինը։ Կարոտի՞ց։ Բայց չէ՞ որ դու առաջներում կարողանում էիր տարիներով սպասել ինձ։

— Իհարկե, կարոտից... Բայց և վախից նույնպես։

— Վախի՞ց։ Այ քեզ բա՜ն... Բայց ինչո՞ւ առաջ, երբ կային ցարն ու ժանդարմները, երբ վախենալու պատճառներն ավելի շատ էին՝ դու այդքան չէիր վախենում։

— Չգիտեմ... Երևի հենց այն պատճառով, որ կային ցարն ու ժանդարմները... Այն ժամանակ ես հաշտվել էի, որ հեղափոխականի կինը՝ զինվորի կին է, և պիտի պատրաստ լինի ամենայն անակնկալների, ամեն փորձության... Իսկ անցյալ տարվա փետրվարից և հատկապես հոկտեմբերից հետո ինձ թվաց, թե ամեն ինչ վերջացել է, թե այլևս չի լինելու ոչ աքսոր, ոչ բանտ և ոչ էլ որևէ վախ...

— Եվ չի՛ էլ լինի, քեզ ո՞վ ասաց, թե կլինի, — գոչեց Շահումյանը։

Սակայն այդ առույգ բացականչության մեջ մի փոքրիկ կեղծիք կար, և Եկատերինա Սերգեևնան իսկույն նկատեց այն։

— Մի՛ խաբիր ինձ, Ստեփան... — դանդաղ շարժեց նա գլուխը։ — Երբ դու հունվարին լուր ստացար, թե նշանակված ես Կովկասի գործերի արտակարգ կոմիսար և մեկնեցիր Թիֆլիս, ես մտածում էի. «Ահա և իմ Ստեփանը վերջապես ոչ որից վախենալու և թաքնվելու կարիք չունի... Չէ՞ որ նա հիմա նախկին փոխարքայի տեղն է...»

— Փոխարքայի՜... — Շահումյանը շվարած էր այդ համեմատությունից։ — Մտածիր, թե ինչ ես ասում, Քեթո։

— Այո, ի՞նչ կա որ, — համեստ առարկեց Եկատերինա Սերգեևնան։ Չէ՞ որ դու ինքդ ես հաճախ գործածում Նորին Մեծություն Պրոլետարիատ արտահայտությունը... Ահա այդ Նորին Մեծություն Պրոլետարիատն էլ քեզ նշանակել է որպես Կովկասի փոխարքա...

— Դե արի ու կնոջդ մարքսիզմ սովորեցրու, որ նա էլ հետո քեզ պատերին դեմ անի, — ակամա ծիծաղեց Շահումյանը։ — Լավ, ենթադրենք թե դու իրավացի ես, հետո ի՞նչ։

— Մի՞թե կարծում ես՝ ես չեմ հասկանում քո այդ տեսքով վերադառնալու պատճառը, — դառնությամբ ասաց կինը։ — Դու նորից ստիպված

էիր ընդհատակ անցնել, քեզ ուզում էին բանտարկել, նույնիսկ սպանել...

Շահումյանը հասկացավ, որ այլևս կատակին տալ ճշմարտությունը թաքցնել՝ չի կարելի, որ դրանից կնոջ տագնապը միայն կավելանա։ Ո՛չ, հարկավոր է ամեն ինչ մինչև վերջ ասել ու այդպիսով նորից վերադարձնել այն հոգեկան խաղաղությունը, որը միշտ հատուկ է եղել կնոջը։

— Այդպե՞ս...— Նա մի պահ մտախոհ քայլում էր խոհանոցում։— Հասկանում եմ, անշուշտ հասկանում եմ քո ցանկությունը՝ վերջապես ապրել հանգիստ, առանց տագնապի ու վախի... Բայց այնուամենայնիվ դու ժամանակից շուտ ես սպասում դրան... Հեղափոխությունը, ճիշտ է, հաղթել է Ռուսաստանում, իշխանության գլուխ են անցել Վլադիմիր Իլյիչն ու մեր մյուս ընկերները, իսկ ես էլ նշանակվել եմ Կովկասի արտակարգ կոմիսար...— Շահումյանը ժպիտով ավելացրեց.— կամ, ինչպես դու ես ասում՝ Պրոլետարիատի փոխարքա... Սակայն չէ՞ որ Նորին Մեծություն Պրոլետարիատը Կովկասում դեռ թույլ է, նա միայն Բաքվում ունի քիչ թե շատ հաստատուն դիրքեր։ Իսկ Թիֆլիսում ուժերի գերակշռությունը, դժբախտաբար, թշնամիների կողմն էր, և նրանք էլ ստիպեցին ինձ սկզբում անցնել ընդհատակ, ապա՝ ընդհանրապես հեռանալ այնտեղից... Եվ հիմա ես վերադարձել եմ, որպեսզի այստեղից սկսեմ պայքարը՝ Կովկասում խորհրդային իշխանություն հաստատելու համար։ Ուստի դու դեռ պիտի մնաս զինվորի կին՝ պատրաստ ամեն փորձության և անակնկալի, Քեթո՛ ջան։

— Մինչև ե՞րբ,— անթարթ հայացքով նրան նայելով, հարցրեց կինը։

— Մինչև որ վերջնականապես հաղթենք...

Եկատերինա Սերգեևնան ուզում էր էլի ինչ-որ բան ասել, բայց այդ պահին ներս վազեցին Սերյոժկան, իսկ նրա հետևից՝ մյուսները։

— Ես էլ եմ ուզում ձեզ հետ,— ճչաց փոքրիկը, փաթաթվելով հոր ծնկներին։

— Մենք նրան պահում ենք, իսկ նա թե՝ «հայրիկն ասաց, որ մեզ հետ կլինի, ինչի՞ է գնացել այնտեղից»,— արդարանում էր Մարիամը, փորձելով նորից գիրկն առնել եղբորը։

— Ճիշտ է, ճիշտ,— ծիծաղեց Ստեփան Գևորգևիչը։— Տված խոսքը պետք է կատարել։

— Լավ, թող հայրիկը հիմա լողանա, շորերը փոխի, իսկ հետո մենք միասին թեյ կխմենք և ամբողջ երեկո կխոսենք, լա՞վ,— ասաց Եկատերինա Սերգեևնան։

— Այո, ես ամբողջ ճանապարհին զինվորական էշելոնում խմել եմ թիթեղե վառարանի վրա եփած ծխահամ ու երբեմն առանց շաքարի թեյ,



ուստի հաճույքով տանը պատրաստած իսկական թեյ կխմեմ,— ասաց Շահումյանը։

Նա արդեն ուզում էր լողարան մտնել, բայց հետո նորից շրջվեց կնոջ կողմը։

— Իսկ Սուրիկն իր այդ ջոկատից տուն գալ չի՞ կարող, ինչ է...

— Այո, վերջերս համարյա չի երևում,— պատասխանեց Եկատերինա Սերգեևնան։— Պիտի ասեմ քեզ, որ նա ինձ անհանգստացնում է, Ստեփան։

— Ինչո՞ւ։ Լուրջ չէ՞, «հեղափոխակա՞ն» է խաղում։

— Ընդհակառակը, չափից ավելի է լուրջ և մեծ... Տասնվեց տարեկան տղան կարող էր մի քիչ էլ երեխա լինել։

— Ախ ա՛յդ է քեզ անհանգստացնում...— Շահումյանը թեթևացած ծիծաղեց։— Բայց դու մոռանում ես, որ նա արդեն մի տարի է, ինչ կուսակցության անդամ է և երիտասարդական կազմակերպության ղեկավար։

— Ես էլ այդ եմ ասում. տասնհինգ տարեկան հասակում ընդունվեց կուսակցության մեջ և ղեկավար դարձավ։ Ապա հիշիր, քանի՞ տարեկան էիր դու, երբ կուսակցական դարձար...

Շահումյանը հանկարծ մտաբերեց այն օրը, անցյալ տարվա օգոստոսին, երբ իր համար անսպասելի հայտնաբերեց, որ ավագ որդին արդեն հասուն մարդ է դառել։ Նա նստած էր Կուինջիի տպարանում և գրում էր «Բակինսկի ռաբոչի» թերթի հերթական առաջնորդողը։ Հանկարծ դուռը բացվեց և ներս մտան Ջափարիձեն ու Սուրենը։ Շահումյանը ուրախ ցատկեց, գրկեց Ալյոշային։

— Ալյոշա՛, սիրելիս, եկե՞լ ես։

Այդ օրերին Պետրոգրադում տեղի է ունենում կուսակցության վեցերորդ համագումարը, բայց Շահումյանը, Կենտրոնական կոմիտեի ցուցումով մնացել էր Բաքվում, որտեղ մենշևիկների ու էսէռների հետ նոր թեժ պայքար էր ծավալվել՝ Բաքվի սովետում վճռական ազդեցություն ձեռք բերելու համար։ Եվ ահա Ջափարիձեն հենց նոր վերադարձել էր համագումարից, իհարկե, առաջին հերթին վազել էր Շահումյանի մոտ և այնտեղից, Սուրենի հետ, եկել տպարան։

Գրկախառնություններից ու առաջին հարցափորձից հետո Զախարինի աչքին ընկավ սեղանին դրված մի թուղթ, որտեղ հաղորդվում էր Պիտերում երիտասարդական շարժման մասին:

— Օ՜, այո, ես ներկա էի «Մոդեռն» կրկեսում երիտասարդական մեծ միտինգին,— գոչեց Ալյոշան:— Դուք պիտի տեսնեիք, թե ինչպիսի ոգևորություն էին արտահայտում նրանց հայացքները, որքան ուժ և կրակ կար այդ ջահել մարտիկների, բանվորական զանգվածների մեջ:

Հետո նա պատմեց, որ կուսակցության համագումարը որոշում է ընդունել՝ ստեղծել սոցիալիստական երիտասարդության կազմակերպություն: Սուրենը լսում էր այդ ամենը ոգևորությունից փայլող աչքերով: Ապա, չդիմանալով, հանկարծ գոչեց.

— Իսկ մենք... Ինչո՞ւ մեզանում այդպիսի կազմակերպություն չի ստեղծվում: Ախր այստեղ էլ երիտասարդությունը ուզում է հեղափոխության մասնակցել, բայց որոշակի ղեկավարություն չունի՝ հիմարություններ է անում:

Եվ նա պատմեց, թե ինչպես աշակերտության համաքաղաքային միտինգում ինչ-որ տարբեր տղաներ պահանջ էին դրել աշակերտական ինքնավարություն մտցնել և ուսուցչական կազմը աշակերտական խորհուրդներին ենթարկել:

Շահումյանը նայում էր տղային ու զարմանում, թե ինչքան ոգևոր և միամտաբար եռանդուն է նա: Հետո ասաց.

— Իհարկե, ճիշտ է, որ երիտասարդությունը պիտի կապել մեր կուսակցության հետ, ուղղել նրա եռանդը սոցիալիստական հեղափոխության հունով:

Հենց առավոտը նա մի հայտարարություն գրեց՝ Բաքվի բոլշևիկյան կոմիտեին կից երիտասարդական կազմակերպության առաջին ժողովը գումարելու մասին և ուղարկեց շարքերին:

— Իսկ դու, Սուրեն, ապահովիր, որ այդ ժողովին մասնակցեն հնարավորին չափ շատ երիտասարդներ:

— Եվ տես, որ խելքը գլխին տղերք լինեն,— ավելացրեց Զախարինը: — Մեզ «մամայի բալիկներ» պետք չեն:

Եվ Սուրենը իր եղբոր՝ Լևոնի հետ արեց այդ: Նա ոչ միայն բերեց խելացի տղաների, այլև այնպիսի կրակոտ ու խելացի ճառ արտասանեց ժողովում, որ դրանից հետո բոլոր միաձայն ընտրեցին նրան նորաստեղծ կազմակերպության նախագահ: Ահա այդ ժամանակ էր, որ Բաքվի բոլշևիկները ընդունեցին նրան իրենց շարքերը, որպես հասուն հեղափոխականի: Իսկ հետագայում, արդեն աշնանը, աշակերտական կազմակերպությունը միացավ երիտասարդ տպագրիչների բոլշևիկյան կազմակերպությանը և ստեղծեց «Բաքու քաղաքի և նրա շրջանների բանվորական երիտասարդության ինտերնացիոնալ միությունը», որի ղեկավարը նորից Սուրենն էր:

(Շարունակելի)

# ԾԻԾԵՌՆԱԿՆԵՐԸ ԻՐԵՆՑ ԲՈՒՅՆԸ ԿԳՏՆԵՆ

Գարուն էր:

Օդին մէջ թարմ խոտի և հողի հոտ կար:

Թռչունները կճռվողէին անդադար:

Գարուն: Ու գարնան այդ առավոտ առաջին անգամ լսեցի ծիծեռնակներու ծըլվըլոցը, որ օդը կլցներ կենդանությամբ:

Բակին մէջ էի և ձեռքերս կսրբեի, երբ մեր բակի հինավուրց ծառին վրա տեսա ամեն տարի մեզի եկող ծանոթ զույգ մը ծիծեռնակները, որոնք իրենց հին բույնը կշինեին...

Ուրախությունս չկրցա զսպել և իսկույն պոռացի.

— Պողոս աղբա՛ր, շուտ եկուր, տես, քու սիրելի թռչունններդ նորեն եկած են...

Ճակատը վարսուն ծմռներով ակոսված բարի ծերունի մըն էր Պողոս աղբար, որ կապրեր հին օրերու քաղցր հուշերով և իր ներկա դառն օրերը կքաղցրացներ անոնց զվարթություններովը...

Ահա սենյակին դուռը կբացվի, և Պողոս աղբարը վազելով կուգա քովս, ապա ձեռքը ճակատը տանելով, արտասվախառն հայացքը ուղղված «աստվածամերձ հատակին».



Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

Ո՞ւր են, ո՞ւր...

Օդին մէջ չեն, տես, հոն ծառին վրա են,— կըսեմ, ձեռքովս ցույց տալով ուղղությունը:

Պողոս աղբարը ուրախութենեն ինքզինք կորսնցուցած էր այդ պահուն: Տեսած էր ծիծեռնակները, իր ծիծեռնակները: Ամեն տարի իրեն այցելող ծիծեռնակները:

Ու հիմա մանուկի մը պես կհրճվեր։

Երկուսով ավելի մոտեցանք ծառին։ Հիմա ավելի մոտիկեն, հստակորեն կտեսնեինք մայր ծիծեռնակին անձնվեր աշխատանքը։ Նա իր հին բույնը կշիներ, իր և իր ձագուկին ապահովության համար։

Պողոս աղբարի աչքերեն երկու կաթիլ արցունքներ գլորեցան վար։ Ես հուզումես չկրցա ինքզինքս զսպել, արցունքս կոկորդիս մեջ սեղմեցի։

Հետո, բարի այդ ծերուկին լայն թաշկինակով մը իր թաց աչքերը սրբելով, լալահառաչ ըսավ հատիկ-հատիկ.

Ասոնք եկան իրենց վաթանը, ամմա մենք... մենք՝ ու՞ր, Հայաստանը՝ ուր։ Մենք անկե հեռու, աշխարհիս չորս կողմը ցըրվեր ենք։ Գոնե եղբայրներիս ու քույրերիս, անոնց զավակներին ու թոռնիկներին բաց աչքով տեսնեի, մուրազս առնելով, մեռնեի...

Պողոս աղբարը իրավունք ուներ։ Հայաստանի մեջ զավակներ ու թոռներ ուներ... Մեկ կողմեն հայրենիքի սերը, մյուս կողմեն զավակներուն ու թոռներուն կարոտը ամեն օր քիչ-քիչ իր սիրտը կմաշեցնեին։

Դրացիները մեր շուրջը հավաքված էին հիմա, և օրվան զրույցը կդառնար մեր տան ծիծեռնակներուն վերադարձին շուրջ, երբ դարբին Սարգիսը խորունկ հառաչեց և ձեռքը Պողոս աղբոր ուսին դնելով ըսավ.

— Պողոս աղբար, քիչ մըն ալ սպասե, քիչիկ մըն ալ, ու անկե ետքը մենք ալ Հայաստան կերթանք ու կմիանանք մեր հարազատներուն։ Հոն՝ մեզի համար տուներ կշինեն, ինչպես այս թռչունները։



Պողոս աղբոր սիրտը թեթևացավ ու հովացավ։ Ամենքս ալ ցրվեցանք մեր տուները, բայց Պողոս աղբարը դեռ կանգնած էր ծառին տակ։ Իր սիրելի ծիծեռնակները կդիտեր՝ գավազանին կռթնած։

ՀՈՎԱԿԻՄ ՓԵՇՏԻՃՅԱՆ

(Սիրիա, Հալեպ, Լ. Նաճարյան—Դ. Դյուլպենկյան Երկրորդական վարժարանի աշակերտ)

---

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ «ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ



Ազնիվ ընկերներ.

Ես պիոներ եմ։ Երկու տարուց ի վեր ստանում եմ «Պիոներ» ամսագիրը, «Պիոներ կանչ» թերթը և «Հայաստանի ֆիզկուլտուրնիկ»-ը։ Ինձ շատ են դուր գալիս բոլորն էլ, հետաքրքրությամբ կարդում եմ։ Ես հաճախում եմ բուլղարական 76 թիվ դպրոցը։ Մեր ուսուցիչն է ընկեր Կարո Հայրապետյանը։ Նա իր բարձրագույն կրթությունը ստացել է Երևանում։ Մենք շատ ենք սիրում նրան։

Հաղորդեցեք մեր սրտագին բարևները Հայաստանի պիոներներին։ Ներողամիտ եղեք իմ սխալներին համար։ Հուսով եմ, որ մոտ ապագայում ավելի լավ կկարողանամ գրել։

Ընկերական ջերմ բարևներով՝

ՄԱՏԼԵՆ ՇԻՐԻՆՅԱՆ

Բուլղարիա, Սոֆիա

# ՄՈՐ ՍԻՐՏԸ

ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

1

Հիսուն տարի է անցել այդ ծանր օրերից։ Մեծ գաղթի տարին էր, 1915 թվականի ամառանը։

Դու լսե՞լ ես Վան քաղաքի մասին։ Երևի լսած կլինես մեծերից։ Կար այդպիսի մի քաղաք։

Ասում եմ կար, որովհետև հիմա գոյություն չունի այդ շեն, գեղեցիկ քաղաքը։ Հեքիաթի ասած Պղնձի քաղաքի պես անհետացել է Վանը, իսկ նրա տեղը ավերակներ են մնացել. չորացած այգիներ և ցամաքած աղբյուրներ…

Ամառ էր. վանեցիները մի մարդու նման, ապրիլ ամսին, թուրք ջարդարարների դեմ կռվեցին և փրկեցին Վանը ջարդից և տեղահանությունից։ Վանեցիներին օգնեց հայկական զորախմբերի և ռուսական բանակի մուտքը։ Թուրքերը նստեցին մեծ ու փոքր առագաստանավեր, թողին ու փախան։ Վանեցիները օրերով և շաբաթներով տոնեցին իրենց հաղթանակը։

Ու հանկարծ… Ի՞նչ պատահեց. նախ շշուկով, ապա ավելի և ավելի բարձրաձայն ու որոշ՝ լուր տարածվեց գաղթի մասին։

Գաղթ, գաղթել,— թշնամուն հաղթել, հետո վեր կենալ ու գաղթե՞լ… անհավատալի էր։

Եվ ո՞ւր գաղթել. բանիմաց մարդիկ ասացին.

- Իգդիր, Էջմիածին, Երևան, մի խոսքով՝ Ռուսաստան։

Հրամանը՝ հրաման էր։

Ու վանեցիները, կին ու տղամարդ, ծերունիներ ու երեխաներ, մի քանի օրվա պաշար վերցրին, ոտով ճանապարհ ընկան, անիծելով իրենց ճակատագիրը։ Վանից դեպի հյուսիս նեղվող ճանապարհը լցվեց լաց ու կոծով, տանջված բազմություններով։

Այն ժամանակ ես տասներկու տարեկան էի։

Մորս, տատիս, ինձնից երկու տարով մեծ քրոջս և երկու փոքր եղբայրներիս հետ ճանապարհ ընկանք։ Ամառ էր, շոգ. ճանապարհը՝ փոշոտ, տանջալի ու երկար։

Ես այն ժամանակ «Լուսաբեր» դասագրքով անցել էի Հովհ. Թումանյանի «Գառնիկ ախպերը»։ Շոգից և ծարավից նեղված, ես հիշում էի նրա տողերը.

ՄԵՐ ՍԻՐԵԼԻ «ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԹԵՐԹԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ, ԵՐԵՎԱՆ,

Հարգելի հայրենակիցներ

Պարտականությանս ձայնին անսալով, կը փափագիմ այս երկտողով, իմ և մեր տան բոլոր անդամներու ջերմ շնորհակալությունները և խորին հարգանքները հայտնել ձեզ բոլորիդ:

Թոռնիկներուս՝ Արմիկին և Արայիկին հանդեպ ցույց տված ձեր ազնիվ, ուշիմ և անձնազոհ վերաբերմունքը շատ բարձր տպավորություն թողուց մեր վրա: Կրկին շնորհակալություն գրքերու և մանավանդ ձեր սրտաբուխ բարեներու համար: Գրելիք շատ բաներ ունիմ թեև, բայց առժամապես միայն այսքանը ըսեմ, թե Սովետ. Հայաստանեն եկած գրքերու և պարբերականներու օգնության շնորհիվ դեռ կապրինք իբրև հայ:

Մեր չար բաղդի ըսեմ, թե՞ չարակամ մի աստծո անհամ կատակի հետևանքով, որմեն հիսուն տարիներե ի վեր հայութենե և Հայաստանեն խապառ գրկված ենք:

Իմ տան բոլոր անդամները, առանց բացառության, կապրինք ու կշնչենք այն հույսով միայն, թե պիտի գա մի օր, երբ մեր բոլոր հայ ժողովուրդը և մեր պապերու երկիրը՝ արևշատ Հայաստանը, հնարավորություն պիտի ստեղծեն մեզ համար ներգաղթել Սովետ. Հայաստան ու ապրել մեր ժողովրդի հետ և աշխատել անոր վերելքին ի նպաստ:

Սրտագին բարևներ ձեզ բոլորիդ, խորին հարգանքներով՝

Ս. ՈՍԿԱՆՅԱՆ

Հարավսլավիա, Բելգրադ



Երկու որբեր,
Քուր ու ախպեր,
Կորած գնում են հեռու,
Արևը՝ վառ,
Ճամփեն՝ երկար,
Ոչ աղբյուր կա, ոչ առու...

*Քանի՞ օր պիտի գնայինք, հայտնի չէր. ոմանք ասում էին հինգ օր, ոմանք՝ երեք, ուրիշները պնդում էին, որ տաս օրվա ճանապարհ պիտի անցնենք. կային և այնպիսիք, որոնք համոզված էին, որ տեղ չենք հասնելու, և որ ճանապարհին կմեռնենք։ Այդպես էլ եղավ. վանեցիներից ոմանք էջմիածին հասան երեք օրից, ոմանք՝ հինգ, ուրիշները՝ տաս օրից, եղան և այնպիսիք, որոնք ճանապարհին մնացին, մեռան, տեղ չհասան։*

*Ճանապարհին ես կորցրի մերոնց և մնացի մենակ։ Մենակ ասելով՝ ընտանիքից մենակ, իսկ այնպես՝ ես մենակ չէի, հազարավոր մարդկանց հետ, քաղցած ու ծարավ, ես էլ գնում էի այն ճանապարհով, որով ուրիշներն էին գնում։*

*Մի գիշեր (ես արդեն չէի հիշում քանիերորդ գիշերն էր...) հասանք մի գետ, որը Բանդի-Մահու էր կոչվում։ Հոգնած, ուժասպառ և ծարավից տանջված ժողովուրդը հարձակվեց ջրի վրա, մի կուշտ խմեց, լվացվեց և պառկեց գոնե մի քանի ժամ հանգստանալու։ Գիշերվա մի ժամին լսվեց աղմուկ և հրացանաձգություն։ Թուրքերն էին հարձակվել գաղթականներին թալանելու և կոտորելու համար։*

*Ժողովուրդը զարթնեց, իրար անցավ։ Բարձրացավ անասելի աղմուկ, լաց ու կոծ։ Շատերն սպանվեցին, շատերը գետ նետվեցին թշնամու ձեռքը չընկնելու համար։ Մնացածները հավաքեցին իրենց ուժերը և փախան։*

*Անուժ և հիվանդ՝ ես ընկել էի ճանապարհի եզրին ու չէի կարող շարժվել։ Մի ձիավոր կանգնեց իմ գլխի վրա։ Նա երևի խղճաց ինձ, բարձրացրեց ձիու և քշեց առաջ։ Իգդիրում նա ինձ տվեց որբանոց, ուր ապրում և ավելի շուտ՝ մեռնում էին ինձ նման անտեր, անտուն երեխաներ։*

*Մեծ եղավ իմ զարմանքը և ուրախությունը, երբ ես գտա միջնակ եղբորս՝ Սուրենին։ Մենք լացինք և հիշեցինք մեր Վանը, տատիկին, մայրիկին...*



*Տեսնես ո՞ւր են նրանք։*

2

*Վերջապես հասավ մի օր, երբ մենք գտանք մայրիկին և փոքր եղբորս՝ Խորենին։ Տատիկս և քույրս կորել էին ճանապարհին։*

*Մայրս աշխատում էր հիվանդանոցում որպես հիվանդապահ։ Մի օր մենք նստած չամիչով թեյ էինք խմում։ Ես ասացի, որ շատ եմ կարոտել Վանին և ուզում եմ, շատ եմ ուզում նորից Վան գնալ։*

*— Իսկ ես,— ասաց Խորենը,— չեմ ուզում Վանը տեսնել։*

*— Ինչո՞ւ,— զարմացա ես եղբորս անտարբերության վրա։*

*— Որովհետև ես տեսա Վանը... հիմա քո գիտցած Վանը չկա...*

*— Ինչպե՞ս թե,— ավելի զարմացա ես,— ինչպես թե «ես տեսա Վանը». մի՞թե դու երկրորդ անգամ եղել ես Վանում։*

*— Եղել եմ,— պատասխանեց Խորենը տխրությամբ։— Դե, հիմա լսիր։ Դու էլ լսիր, մայրիկ, որպես վկա, թե ինչպես ես ազատվեցի մահից։*

*Գաղթի օրերին ես անբաժան մնացի մայրիկից։ Ամբողջ ճանապարհը մենք անցանք ձեզ փնտրելով, բայց չգտանք։ Կորան տատիկը, Ադրինեն, Սուրենը, մորեղբայրը, դու կորար... Մենք միշտ միասին էինք։ Իգդիրում գտանք միայն մորեղբորը։ Մենք երեքով շրջեցինք բոլոր գաղթականական կայանները, հիվանդանոցներն ու որբանոցները։ Ոչ ոքի չգտանք։ Ինչպես երևում է, ձեզ արդեն ուղարկել էին էջմիածին։ Մենք մի ամիս ապրեցինք Իգդիրում, վրանների տակ։*

*Մորեղբայրն ասաց.*

*— Վանից նոր եկողները պատմում են, որ ճանապարհներն ապահով են և որ Վանում ոչ մի թուրք չկա։ Եկեք վերադառնանք Վան, գուցե ճանապարհին գտնենք մեր կորածներին...*

*Ասելն ու անելը մեկ եղավ։ Բռնեցինք վերադարձի ճանապարհը։*

*Ճանապարհն այս անգամ ավելի կարճ թվաց։ Չեմ ուզում պատմել մեր տեսածների մասին։*

ճանապարհի վրա և նրա երկու կողմերում ընկել էին դիակներ. նրանց մեջ մենք ձեզ էինք որոնում...

Բացի մեզնից կային և ուրիշ վերադարձողներ։ Հանդիպեցինք մինչև անգամ ծանոթների։

Երբ հեռվից երևաց Վանը, սիրտս լցվեց ուրախությամբ։ Մի պահ թվաց, որ ոչինչ չի փոխվել։ Նույն քաղաքը, սպիտակ տնակներ, նույն ծառաշատ փողոցները, փողոցներում խաղացող երեխաները, մեր մրգաշատ այգին... Հիմա երևի մայրիկը ճաշ է պատրաստում։

Մտանք քաղաք։ Սարսափելի տպավորություն թողին ամայի փողոցները, այրված տներն ու տիրող լռությունը։ Մենք շշուկով էինք խոսում իրար հետ։

Ահա և մեր տունը։

Մեր տունն էլ այրված էր։ Անցանք կիսաքանդ, սևացած պատերի տակով և դուրս ելանք այգին։ Ծառերը ճղակոտոր էին, սև-սև՝ թափված մրգեր։ Լսվեց մի սարսափահար մլավոց։ Մեր մոխրագույն կատուն էր, պոչը տնկած փախավ. վայրենացել էր խեղճը։

Բոռնազյանց փողոցի վրա մենք գտանք մի չայրված, երկհարկանի տուն։ Ներս մտանք։ Երկու սենյակներում ապրում էին մեզ նման վերադարձած երկու ընտանիքներ։ Նրանք ուրախացան մեզ տեսնելով։ Մի սենյակ էլ մենք գրավեցինք, ուրիշ տներից անկողին ճարեցինք, անգամ աթոռ գտանք։ Մեր նոր հարևանները երեխաներ ունեին, մեծ ու փոքր։ Ես մտերմացա մեկի, կապույտ աչքերով և շեկ մազերով, մոտ ութ տարեկան Միքայելի հետ։ Մենք պահմտոցի էինք խաղում։ Նա սիրում էր պահվել բավականին լայն դուռ ունեցող խոհանոցում և, բառ երևալով, նրան դուր էր գալիս, երբ ես բռնելով նրա մեջքը, փոքրիկ ոտներից, դուրս էի քաշում ու փախչում, ինքս պահվում։

Եկավ աշունը։ Ես վարժվեցի իմ կյանքին և այս նոր, ոչ մի բանով հին չհիշեցնող Վանին։ Երբեմն գնում էի մեր այրված տունը, մտնում այգի, պառկում խոտերի մեջ և հիշում հին օրերը։

Մի օր էլ լուր տարածվեց, որ թուրք զինվորները մոտ են քաղաք և սկսել են ջարդը։ Լսվեցին հրացանաձգություններ, գոռում-գոչյուն։ Մեր տուն լցվեցին ուրիշ թաղերում ապրող հայ ու կեսու ընտանիքներ։ «Մահն ընկերով հարսանիք է»,—ասում էին նրանք։

Մութն իջավ, իսկ կրակոցները չէին դադարում։ Ոչ միայն չէին դադարում, այլև մոտենում էին։

Որոշեցին բոլորը բարձրանալ տանիք։ Առաջին հարկի տանիքին մի երկար սանդուղք էր դրված, երկրորդ հարկի տանիքը բարձրանալու համար։ Որոշեցին բարձրանալ երկրորդ հարկը. սանդուղքները վեր քաշել և պառկել տանիքին...

Մայրիկի կարգադրությամբ ես մի կերպ մտա խոհանոցը։ Եղբորս կարծիքով դա ամենաապահով տեղն էր։ Միքայելի մայրը դժգոհեց. նա ուզում էր Միքայելին պահել այնտեղ։

Պառկել էի խոհանոցում, երբ հանկարծ լսվեց մայրիկի ձայնը.

— Արմեն, դո՛ւրս արի։

Դուրս եկա։

— Սիրտս վկայում է... վատ բան է վկայում... Գնանք, գնանք, դու էլ բարձրացիր տանիք։

Բարձրացանք տանիք։ Երբ բարձրացավ վերջին մարդը, սանդուղքները վեր քաշեցինք ու կողք-կողքի պառկեցինք։ Ցուրտ էր։ Քամին փչում էր ծովից. ես փաթաթվեցի մայրիկիս և քնեցի։

Որքան էի քնել՝ չգիտեմ, զարթնեցի աղմուկից։ Վայրենի գոռում-գոչյուններով ասկյարները ջարդում էին մեր տան դուռը։ Ջարդեցին։ Ներս մտան։ Լսվեցին հրացանի պայթյուններ։ «Չէ՛, մահն ընկերով անգամ հարսանիք չէ»,—մտածում էի ես։

Ասկյարները բարեբախտաբար տանիք չբարձրացան։ Նրանք դուրս եկան տնից, նստեցին ձիերը և երգելով գնացին։

Առավոտյան վար իջանք տանիքից։ Առաջին բանը, որ ես տեսա, դա խոհանոցից դուրս հոսած արյան բարակ առուն էր։

Այնտեղ թաղվել էր Միքայելը։

— Սիրտս վկայեց,—ավելացրեց մայրիկը՝ լսելով Արմենի՝ իրեն հայտնի պատմությունը,—իջա տանիքից, քեզ վեր տարա... Խեղճ Միքայել, խեղճ աղջիկ...

— Նույն օրը մենք վերջնականապես թողինք Վանը,—վերջացրեց եղբայրս,—և սկզբում ասացի, որ չեմ կարոտում Վանին... Ճիշտ չասացի... Հիմա էլ կարոտում եմ... Վանին չի կարելի չկարոտել...



# ՊԵՐՃԱԽՈՍ ԹՎԵՐ



Այժմ աշխարհի բոլոր կողմերից եկած 200 հայ ուսանողներ սովորում են Երևանի պետական համալսարանում, ինչպես նաև պոլիտեխնիկական, բժշկական, գեղարվեստական-թատերական և այլ ինստիտուտներում:

Երևանում այժմ կառուցվում է Սունդուկյանի անվան պետական թատրոնի նոր շենքը, որը կավարտվի տարեվերջին: Սկսվել է Լենինականի դրամատիկ թատրոնի շենքի կառուցումը: Մոտակա տարիներս կկառուցվի 8—10 հազար տեղանոց կուլտուրայի և սպորտի պալատ, իսկ ռեսպուբլիկայի մյուս քաղաքներում՝ թատերական-համերգային մի շարք նոր շենքեր:

1965 թվականին Սովետական Հայաստանում շինարարության վրա պիտի ծախսվի 345 միլիոն ռուբլի: Ջերմաէլեկտրակայանների ընդհանուր հզորությունը կավելանա մոտ 175 հազար կիլովատով: Միաժամանակ կանցկացվեն 362 կիլոմետր բարձր լարվածության էլեկտրագծեր:

Այս տարի մեր ռեսպուբլիկայի մանկապարտեզներն ու դպրոցները կընդունվեն 62 հազար երեխա, իսկ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները՝ 24 հազար երիտասարդ:



Սովետական Հայաստանում 10 հազար մարդուն ընկնում է 24 բժիշկ և 107 ուսանող: Երևանում աշխատում են 2000-ից ավելի բժիշկ, իսկ բուժաշխատողների ընդհանուր թիվը հասնում է 10 հազարի:



Միայն Երևանում այժմ կա 135 հանրակրթական դպրոց, որ սովորում են ավելի քան 120 հազար պատանիներ ու աղջիկներ: Իսկ բարձրագույն և միջնակարգ հաստատություններում սովորողների թիվը հասնում է 48 հազարի:



Սովետական Հայաստանի բնակչությունը ընթացիկ տարում կստանա 822 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, ինչպես նաև դպրոցական շենքեր՝ 20 հազար երեխայի համար, նախադպրոցական հիմնարկներ՝ 5700 երեխայի համար:



Սովետական Հայաստանը ժամանակակից տեխնիկական բարդ սարքավորումներ է առաքում աշխարհի վաթսունհինգ երկրներ: Այս տարի այդ ցուցակին ավելացան ևս 9 նոր երկիր՝ Կանադա, Նորվեգիա, Նոր Զելանդիա, Իռլանդիա, Կամերուն, Քուվեյտ, Մարոկկո, Հորդանան և Քենիա: Անցած տարի մեր արդյունաբերական ձեռնարկությունները արտասահմանյան զանազան երկրներ էին ուղարկում 124 անուն արտադրանք:



# ԱՂՔԱՏՈՒԹՅԱՆ ԺԻՐԱՆՆԵՐՈՒՄ

Թուրքիայի մասին որևէ գաղափար կազմելու համար հարկավոր է լինել ոչ թե Ստամբուլում, այլ՝ Անկարայում: Որից հետո ուղևորվել այն վայրերը, որտեղ գեղատեսիլ ոչինչ չկա: Այդ նպատակի համար բավական է ավտոմեքենա և թարգմանիչ: Հարկավոր է միայն մեկ օր, որպեսզի մարդ այցելի երեք-չորս գյուղ: Ճանապարհորդությունը շատ կարճ կտևի, քանի որ այնտեղ ոչ տեսնելու բան կա և ոչ էլ մարդ: Վերադառնալուց հետո պետք է մի հասարակ բազմապատկում կատարել: Թուրքիայում կա մոտ 60 հազար գյուղ, և Անկարայի ամեն մի բնակիչ կհաստատի, որ դրանց երեք քառորդից ավելին գտնվում է միևնույն սարսափելի վիճակում:

Թվաբանությունը ցնցում է: Ըստ վիճակագրական տվյալների, թուրքական գյուղերի ավելի քան մեկ երրորդում ոչ ջրհորներ կան, ոչ դպրոցներ: Բնակչության 60 տոկոսը մինչև այսօր անգրագետ է: Ամենուրեք կարելի է միայն մզկիթներ տեսնել: Մզկիթը միակ «ձեռնարկությունն» է, որը «միավորում» է ցաքուցրիվ մարդկային ամբոխներն ու թուրքական 20 միլիոն գյուղացիությունը և դարձնում մեկ ժողովուրդ ու մեկ ազգ:

Ոչ խանութներ կան, ոչ թեյարաններ, չկան նույնիսկ օթևաններ: Իսկ դա նշանակում է, որ չկա ոչ բժիշկ, ոչ դեղագործ, ոչ լրագիր: Ժողովրդի առողջությունը վստահված է հասարակ սանիտարի, որն ընդունակ է հազիվ մեկ-երկու սրսկում կատարել: Մինչև ամենամոտիկ բժիշկը, բայց ոչ հիվանդանոցը, ամենաքիչը 20 կիլոմետր է: Ըստ վիճակագրական տվյալների, *յուրաքանչյուր չորս հազար բնակչին հասնում է ընդամենը մեկ բժիշկ:* Արդարադատությունը վարում է մոլլան կամ գյուղապետը: Հաճախ, նա գյուղի ամենահարուստ մարդն է լինում, որը բոլոր դեպքերում սարսափ է ազդում իր շրջապատի վրա: Էլեկտրականություն չկա, ուրեմն ռադիո լսել հնարավոր չէ:

Գյուղացիությունը այնպիսի ցածր մակարդակի վրա է, որ ստիպված է միմիայն իր սեփական ձեռքերով հայթայթել իր աղքատիկ ապրուստը: Այնուամենայնիվ դեռ մինչև այսօր գյուղացիներն ուտում են միայն իրենց սեփական արտադրանքը: Կուշտ լինելու դեպքում ուրախանում են, իսկ քաղցի ժամանակ տառապում:

«Զա ռուբեժոմ», 1964

*Երբ Թուրքիայի սենատը քննարկում էր առողջապահության մինիստրության 1965 թվականի բյուջեն, նախկին մինիստր, սենատոր Ռուշտու Յալչըն, իր ելույթում հայտարարեց, որ ներկայումս Թուրքիայում կյանքի տևողությունը միջին հաշվով չի անցնում 33 տարուց: Մեծ է երեխաների մահացության թիվը: Հազար երեխայից 446-ը մահանում է մինչև 13 տարեկան հասակը:*

*Առողջապահության մինիստր Քեմալ Դեմիրը, բացահայտելով այդ դրության պատճառները, հայտարարեց, որ Թուրքիայում կա ընդամենը 10 հազար բժիշկ: Եթե Ստամբուլում 550 մարդուն ընկնում է մեկ բժիշկ, ապա, օրինակ, Գյումուշխանե վիլայեթում 24.875 մարդուն է ընկնում մեկ բժիշկ: Երկրում զգացվում է հիվանդանոցների և բուժսարքավորման զգալի պակաս:*

*Թուրքիայի տնտեսական վիճակը գնալով վատանում է: «Մենք,— վերջերս հայտարարեց Մերձարևելյան համալսարանի ռեկտոր Քեմալ Կուրդաշը,— գնում ենք դեպի քայքայում, երկրի տնտեսական վիճակը ճգնաժամ է ապրում: Հենց այն, որ վերջին 2 տարվա ընթացքում Թուրքիան թաղվել է 500 միլիոն դոլար պարտքի մեջ, չի կարող լավ հետևանք ունենալ»:*

«Զա ռուբեժոմ», 1964





Շապիկի առաջին էջը՝ «Սասունցի Դավթի» արձանը Երևանի կայարանամերձ հրապարակում (հատված)

Գործ՝ ԵՐՎԱՆԴ ՔՈՉԱՐԻ

Լուսանկար՝ Մ. ՈՒԶՈՒՆՅԱՆԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Մտորումներ ճանապարհի կեսին — Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ
2. Հիսուն տարի առաջ — Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ . . 2
3. Երկիր գնալ — Ռ. ԱՐԱՄՅԱՆ 4
4. Իմ Հայաստան — Ալ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ . . . . . . . . 8
5. Թող սոսափեն ծառերը . 13
6. Ձմռուկները — Վ. ՍԱԴԱՅ . 14
7. Գունավոր ներկեր Մ. ՍԱՐՅԱՆ . . . . . . . . . . . . 17
8. Դասղեկը — Կ. ՏՈՆՈՅԱՆ . 21
9. Մենք սիրում ենք — Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . . . . . 23
10. Լորագետ — Հ. ՍԱՀՅԱՆ 24
11. Ընտանեկան երեկո — Մ. ՇԱԹԻՐՅԱՆ . . . . . . 26
12. Ծիծեռնակները իրենց բույնը կշինեն — Հ. ՔԵՇԻՇՅԱՆ 30
13. Մոր սիրտը — Գ. ՄԱՀԱՐԻ 31
14. Պերճախոս թվեր . . . . 34
15. Ազատության ճիրաններում . . . . . . . . 35





ԱՊՐԻԼ
№ 4 1965 Թ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ
ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԵՐԵՎԱՆՅԱՆ ՃՈՊԱՆՈՒՂԻՆԵՐԸ

Դետաշի ափին, այնտեղ, ուր հատվում են Նալբանդյան և Կիրովի փողոցները, կառուցվում է առաջին ճոպանուղին։ Այն ձգվելու է Գետառի ափից մինչև Նորք։ Ճոպանուղին կլինի հետաքրքիր օդային փոխադրամիջոց՝ մետաղյա հաստ ճոպաններից կախված կոկիկ վագոնիկներով։ Վագոնիկը, որը միանգամից կտեղավորի 25 ուղևոր, մեկ րոպեում կանցնի 200 մետր ճանապարհ։

Երկրորդ ճոպանուղին կկառուցվի Հրազդանի կիրճում։ Այն Պարոնյան փողոցը կկապի երկրորդ բարձրադիր հանգստավայրի՝ Ծիծեռնակաբերդի հետ։ Երկու ճոպանուղիների ընդհանուր երկարությունը կլինի 1800 մետր։ Օդային այդ ուղիները շատ բանով կթեթևացնեն մայրաքաղաքի տրանսպորտի աշխատանքը և երևանցիներին հնարավորություն կտան իրենց հանգիստն անցկացնել Նորքի և Ծիծեռնակաբերդի գեղատեսիլ վայրերում։

---

**1963** թվականին Երևանի դաշնամուրի նորակառույց գործարանը արտադրեց «Երևան» մարկայի 50 դաշնամուր, իսկ 1964 թ. վերջերին գործարանի թողարկած դաշնամուրների թիվը անցավ 500-ից։

---

**1946-1948** թ. թ. հայրենիք ներգաղթած հայերի թիվը հասավ հարյուր հազարի։ 1962 թվականի աշնանը վերսկսվեց հայրենադարձությունը։ Վերջին երկու տարում արտասահմանյան տարբեր երկրներից Սովետական Հայաստան են վերադարձել 4,200 հայեր։

---

**1964** թվականի ընթացքում Սովետական Հայաստանում բացվեց 50 հազար աշխատավորների աշխատավարձը։ Իրենց բնակարանային պայմանները բարելավեցին 90 հազար մարդ։


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց., № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 07623։ Պատվեր՝ 754։ Տպաքանակ՝ 17500։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 10/IV 1965 թ.։ ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ., № 91։ Գինը 20 կ.

Հայաստանի գիտությունների ակադեմիայի աստղադիտարանում շուտով շարք կմտնի մի նոր հեռադիտակ, որը հնարավորություն կտա և ավելի խորը թափանցել տիեզերական հեռուները: Դա կլինի աշխարհի ամենահզոր հեռադիտակներից մեկը:

Այդ հեռադիտակի համար կառուցվող աշտարակը, որն ամենաբարձրն է լինելու Բյուրականում, կունենա տասնհարկանի շենքի բարձրություն: Այս լուսանկարում դուք տեսնում եք աշտարակի մակետը: Նախագծի հեղինակն է ճարտարապետ Սարգիս Գուրզադյանը:





Երևանի երկրորդ համապատկերային կինոթատրոնի մակետը: Նախագծի հեղինակներ՝ Հր. Պողոսյան, Ս. Խաչիկյան, Ա. Թարխանյան:

Լուսանկարները՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

20 կ.

Ինդեքս 77806

*Այս տարի շահագործման կհանձնվի Երևանի պետական ակադեմիական թատրոնի նոր շենքը։ Նախագծի հեղինակ՝ ճարտարապետ Ռ. Ալավերդյան։*

*Լուսանկար՝ Հ. ՀԵՔԵԹՅԱՆԻ*

*Այսպիսին է լինելու Սայաթ-Նովայի փողոցի վրա կառուցվող նոր հյուրանոցը, որը կոչվելու է «Անի»։ Նախագծի հեղինակներ՝ Ֆ. Դարբինյան, Է. Սաֆարյան, Ֆ. Հակոբյան։*

*Լուսանկար՝ Ռ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԻ*

